

# ԱՔԱՂԱՂԸ

*ՕԼԵԳ ՍՐԼՈՎ*

Աղջիկը, որին սիրահարվեցի, կոչվում էր Նիկա: Լրիվ անունը Վերոնիկա էր. Նիկա ասում էր տատը:

Նիկային առաջին անգամ տեսա փոստում: Տատը նրան խըստությամբ ասաց. «Ո՛չ մի տեղ, Նիկա՛, չգնաս»:

Նիկան ինձ շատ դուր եկավ: Ես փոստից գնում ու քրտնում էի՝ երանի թե ծանոթանամ...

Սկսեցի անցնել-դառնալ այն տան մոտով, ուր ապրում էր Նիկան: Հարկավոր էր, թե հարկավոր չէր՝ գնում էի: Նրանց տունը գյուղի բոլորովին հակառակ ծայրին էր: Նիկան, իհարկե, իսկույն հասկացավ, որ ես սիրահարվել եմ իրեն: Առաջ ինքն ինձ փողոցում կանգնեցրեց ու հարցրեց. «Տղա՛, անունդ ի՞նչ է, դու գրքեր ունե՞ս...»

Ես միայն մի հատիկ գիրք ունեի՝ Սետոն-Թոմպսոն, գազանների մասին: Շատ պինդ էի այն պահում: Անգամ այն ժամանակ երբ էշելոնով, մայրիկիս հետ ռմբակոծման տակ ընկանք և պետք էր ամեն ինչ նետել, այդ գիրքը ես պահեցի: Եվ երբ մայրիկս ու ես իրար կորցրինք, դարձյալ պահում էի: Եվ հետո երբ մայրիկս ինձ գտավ, պարզվեց, որ ճամպրուկը... որ ձմեռային վերարկուս նետել էի, իսկ գիրքը՝ ոչ...

Ես Նիկային ասացի, որ Սետոն-Թոմպսոն ունեմ: Նիկան քիթը կնճռոտեց ու ասաց, որ կենդանիների մասին գրքեր առանձնապես չի սիրում, բայց որ կա, կվերցնի... «բեր...»

Այսպես ահա մենք ծանոթացանք:

Ի՜նչ գեղեցիկ էր այս Նիկան. երեսը կլոր էր, աչքերը՝ մեծ-մեծ, հյուսը՝ հաստ-հաստ, ոսկեգույն...

Տատը նրան օրը մի նոր կոֆտա էր հագցնում, որովհետև թեև նրանք նույնպես էվակուացված էին, ի տարբերություն մյուսների, իրենց հետ շատ տարբեր իրեր էին վերցրել: Նրանց բախտը այնպե՜ս բերել էր: Ոչ մի տեղ նրանց չէին ռմբակոծել, ոչ մի տեղ նրանցից ոչինչ չէր այրվել, ոչ մի տեղ ոչինչ չէին գողացել նրանցից:

Ես գիրքը տարա Նիկային, իսկ նրա տատիկն ինձ հրավիրեց թեյ խմելու: Թեյը մենք խմեցինք կոնֆետ-բարձիկներով, և ես տատիկին շատ դուր եկա, որովհետև ամեն բանի համար ասում էի՝ շնորհակալություն:

Իսկ երբ ես գնում էի, դուռը ծածկելիս լսեցի, թե ինչպես տատիկը Նիկային ասաց. «Թող մեկ մոտ գա-գնա, շատ լավ տղա է, տեղացիների թայը չի, դաստիարակված է...»

Եվ այդ ես էի:

Բայց Նիկայենց մոտ թեյ խմել ինձ այլևս չվիճակվեց: Եվ ահա թե ինչու: Նիկան իր տատիկի հետ ապրում էր Սոլոդկինների տանը, իսկ Սոլոդկիններն ապրում էին Ֆենյուշկինների կողքին: Իսկ Ֆենյուշկիններն ունեն մի տարօրինակ աքաղաղ: Այնպիսի մի աքաղաղ, ամբողջ գյուղում հայտնի, որ բոլորը նրանից վախենում էին: Մեկն ունենում է հարու տըվող այծ, մեկն ունենում է կծան շուն, իսկ Ֆենյուշկիններինը՝ բոլորը գիտեին, աքաղաղն էր:

Նրանց աքաղաղը շանից լավ է բակը պահպանում: Չիմացողը հենց որ բակ է մտնում, լեղաճաք դուրս է թռչում այնտեղից, ետևից էլ աքաղաղը՝ կո՛ւ-կո՛ւ-կո՛ւ-կո՛ւ կանչելով...

Եվ ահա օրերից մի օր, երբ ես հյուր էի գնում Նիկային, նրանց տան կողքին հանդիպեցի այս աքաղաղին:

Ես ուզեցի նրան շրջանցել, բայց աքաղաղը գլուխն իջեցրեց, կատարը տնկեց և սուր ճանկերը կծկելով թռավ ինձ վրա: Ես նրան ձեռքով քշեցի, բայց նա նորից ու նորից վեր թռավ: Ես խփում էի ինչպես հասնում էր, իսկ նա համառորեն ուզում էր ճանկերն աչքերս կոխել, և ես վախեցա, որ կքոռանամ ու սկսեցի փախս տալ նրանից:

Այդ ի՜նչ սարսափելի ճակատամարտ էր... Աքաղաղը մեծ էր, համարյա իմ բոյի, թե՜ ինձ էր այն ժամանակ այդպես մեծ թվում: Բայց փորձված, շա՜տ փորձված կռվող էր, իսկ նրա չարությունը կբավականացներ քառասուն աքաղաղի:

Իմ ձեռքերից արդեն արյուն էր հոսում, բայց աքաղաղից էլ թռչում էին փետուրները:

Սակայն ամենասոսկալին ահա թե ինչն էր: Նիկան՝ իմ սերը, կանգնել էր ցածրիկ ցանկապատի ետևը և լուռ դիտում էր մեր մենամարտը, իմ խայտառակությունը... Նա ոչ ոքի օգնության չկանչեց, ինքն էլ օգնության չեկավ, նետելով աքաղաղի վրա թեկուզ մի փայտի կտոր... Կանգնել, նայում էր...

Ուրիշ էլ ի՞նչ կարող էի ես անել: Նահանջեցի: Նահանջելը ո՞րն է, ես փախա... ուրիշ ճար չկար, աքաղաղն անհաղթ էր:

Խոր ճանկռվածներից արյունը հոսում, լցվում էր աչքերս: Վերնաշապիկս, նոր, ճերմակ շապիկըս, ճղճղվել էր: Նույնիսկ ոտքերս էին ցավում, աքաղաղը վրա թռչելիս օդում կտցահարել էր ծնկներս... Եվ ահա, կաղալով, շրթունքս կծելով, որ ցավից ու վիրավորանքից չլռամ, ես փախա պատերազմի դաշտից:

Գետակում լվացվեցի և տուն վերադարձա միայն երեկոյան: Լավ է, որ մայրիկս ինձ վրա երբեք չէր խոսում շոր պատռելու, քերծվածքների, կապտածների համար: Նիկայի մասին ես այդ օրն այլևս չէի մտածում: Մտածում էի իմ խայտառակվելու մասին, և որոշեցի վրեժխնդիր լինել աքաղաղից:

Հետևյալ օրը սկսեցի նետ-աղեղ պատրաստել: Միայն նետով ես կարող էի սպանել այդ աքաղաղին:

Փոքրիկ աղեղներ կարողանում էի պատրաստել, բայց հարկավոր էր իսկական, մարտական աղեղ, որի նետը թռչեր հեռու և անվրեպ: Եվ հարկավոր էր լավ նետ:

Ես երկար աշխատեցի. հավատո՞ւմ եք թե ոչ. համարյա մի ամիս: Սկզբում փնտրեցի բարձր և ուղիղ գիհի, քանի որ լավագույն աղեղը գիհի փայտից միայն կարելի է պատրաստել, կտրեցի այն և հաստ, կոպիտ կողմը տաշեցի: Ձիանոց գնացի, խնդրեցի ձիու մազ և հյուսեցի հիանալի աղեղալար: Հետո սոճու ճիպոտից, մի ամբողջ օր չարչարվեցի, ապակու կտորով կեղևը քերելով, երկար նետ սարքեցի, ծայրի համար օգտագործեցի մատիտի թիթեղյա ծայրակալ:

Փորձեցի աղեղը՝ նետը թռավ-գնաց ծակեց ֆաներայի կտորը, որի վրա ես կավիճով աքաղաղ էի նկարել:

Եվ ահա սկսվեց իմ կյանքում առաջին ու վերջին որսը:

Ես դարանակալեցի աքաղաղին կռատուկների ետևում, զոմաղբակույտի մոտ, որտեղ նա իր հավերի համար կեր էր քչուչում: Ես սպասեցի, որ նա մոտիկ գա, կանգնի կողքի... Մի քանի անգամ ձգեցի ու բաց թողի աղեղը: Միայն մի հատիկ նետ ունեի, և չէր կարելի վրիպել: Աղեղալարը ծնգաց: Հավերն իրարով անցան, նետվեցին այս ու այն կողմ, իսկ իմ թշնամին վերև ցատկեց և նետը փետուրների մեջ, թևը կախ, իսկը ոնց որ խփված ինքնաթիռ, սլացավ եղինջների կողմը:

Չգիտեմ ինչու, ես տուն դարձա տխուր... Գուցե նրա համար, որ սկսեցի խղճալ հիմար աքաղաղին: Չգիտեմ... Ես նրան չէի սպանել, այլ միայն վիրավորել էի... Բայց հետո հասկացա... Պատճառն ուրիշ էր: Ես հասկացա, որ այլևս չէի սիրում գեղեցկուհի Նիկային, ահա թե ինչ...

Եվ վերցրի աղեղն ու նետեցի հեռու թփերի մեջ:

## ՄԵՆՔ ԵՎ ՄԵՐ ՀԱՅՐԵՐԸ

*ՎԱՀԱՆ ՄԱՂԱԼՅԱՆ*

Զինվոր էի ես հյուսիսում,
Ու զինվոր էր Սաշան ինձ հետ,
Մի օր պատմեց նա այսպիսի
Պատերազմում եղած մի դեպք.
— Անեղ կռվում հայրենական
Այս վայրերում մարտ է եղել,
Ծառաչել են արկ ու ական,
Ու տանկերն են մերոնց նեղել,
Մի թեժ մարտում մեկ էլ հանկարծ,
Ամպածրար աշնան մի օր,

Չար ոսոխի գնդակն առած՝
Հայրս ընկել է վիրավոր:
Եվ ընկերը՝ մի հայ մարտիկ,
Գնդակների տարափի տակ
Դուրս է հանել մարտի դաշտից
Հորս անուժ մարմինը տաք:
Դուրս է հանել, փրկել մահից,
Վերքն է խնամքով փաթաթել,
Մինչև մերոնք եկել հեռվից
Ու թիկունք են հորս տարել:

Բաժանվել են այսպես նրանք,
Եվ որ իրար հիշեն կյանքում,
Նկարներն են իրենց միակ
Վերջին պահին փոխանակել:

Այս բոլորը Սաշան պատմեց
Ու նայեց ինձ երկար-երկար
Եվ գրպանից դանդաղ հանեց
Մի խունացած լուսանկար:

Մի պահ անես պապանձվեցի,
Երբ նայեցի այդ նկարին,
Զինվոր հայրս ժպտում էր ինձ
Հեռվից անեղ տարիների:

## ԵՂԵՎՆԻ ՔՈՒՅՐԵՐԻ ՀԵՔԻԱԹԸ

*ՄԱՆՈՒԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

Զառիթափ սարալանջին, գլուխները բարձր, հպարտ կանգնած էր եղևնիների ընտանիքը: Եղևնիները, ճիշտ է, իրենց ծնողներին չէին հիշում, որբեր էին, բայց դրա համար չէին տխրում, որովհետև իրենք հազար-հազար էին ու հարազատ քույրեր էին: Եվ բոլոր քույրերի անունը նույնն էր՝ Եղևնի էր: Տարիքով մեծ չէին նրանք, ընդամենը հինգ-վեց տարեկան, բայց պետք էր տեսնել, թե ինչպես էին գարնան քամու, անձրևների ժամանակ ձեռք ձեռքի տալով իրար պատսպարում, ինչպես էին ամռան տապին հով անում իրար, ինչպես էին փափուկ ժպտում միամիտ հեքիաթների վրա, ինչպես էին աշնանը հպարտանում, որ բոլորը տերևաթափ են լինում, իսկ իրենք կանաչ-կանաչ են և վերջապես, ինչպես էին ձմռանը ուրախանում, երբ մյուս բոլոր ծառերը թողած՝ սկյուռիկներն ու թռչունները իրենց էին այցելում:

Երջանիկ էր եղևնիների ընտանիքը:

Բայց, ահա, ձմռան մի ցուրտ առավոտ մարդիկ եկան, կտրեցին նրանց, տարան, լցրեցին բեռնատար մեքենայի մեջ:

— Ո՞ւր են տանում, — հարցնում էին քույրերը իրար, և ոչ ոք չէր կարողանում պատասխանել:

Բեռնատարը ցնցվելով, քույրերին իրար խփելով տանում էր, և նրանք ցավի՞ց, օտարության ահի՞ց, թե՞ այդ էր պատճառը՝ սկսեցին անձայն արտասվել: Շա՞տ գնացին, քի՞չ, քույրերից ոչ ոք չիմացավ: Մեքենան ինչ-որ տեղ կանգնեց և երբ ճռնչալով բացվեց թափքը, Եղևնի քույրերը տեսան, որ ծանոթ սարալանջը չկա, անհետ կորել է: Հետո մեկը բարձրացավ թափք, մտավ և իրենց ոտնատակ տալով սկսեց ընտանիքը մեկ-մեկ ցրել:

— Ինչու՞ եք մեզ իրարից բաժանում, չէ՞ որ մենք քույրեր ենք, — ասում էին եղևնիները, բայց ո՞վ էր նրանց լսում:

Եվ տարան քույրերին մարդիկ, իրենց տուն տարան: Իհարկե, նրանցից ոչ մեկը չգիտեր՝ ինչ բան է տունը: Նրանք բոլորն էլ սկզբում վախենում, քաշվում էին, բայց երբ կանգնեցրին սենյակի ամենահարմար տեղում և սկսեցին զարդարել Եղևնի քույրիկներին՝ նոր հասկացան, որ այստեղ, իհարկե, սարալանջից լավ է՝ տաք է, լուսավոր: Իսկ ինչպիսի՜ գույնզգույն շորեր հագցրեցին, զանգակիկներ, թռչուններ կախեցին ճյուղերից, վառվող ու հանգչող լապտերներ փռեցին նրանց վրա, ձյան փաթիլներ շաղ տվեցին... «Ա՜խ, եթե մյուս քույրիկներս տեսնեին», — մտածում էր նրանցից ամեն մեկը:

Բայց ամենից հետաքրքիրն ու ուրախալին առավոտյան էր, երբ երեխաներն արթնացան ու սկսեցին նրանց շուրջը երգել ու պարել: Հրճվանքից Եղևնի քույրիկների սիրտը քիչ էր մնում պայթի: Այնքա՜ն լա՜վն էին, այնքա՜ն սիրու՜ն էին այդ երեխաները, ո՜նց էին իրենց սիրու՜մ, ո՜նց էին փափլիկ, փոքրիկ թաթիկները հպում իրենց ճյուղերին, խոսում իրենց հետ:

Եվ քույրերը բոլորն էլ ափսոսում էին, որ մարդկանց լեզվով խոսել չգիտեն, որպեսզի նրանց պատմեին իրենց սարալանջի մասին և թռչուններից լսած հեքիաթները պատմեին նրանց:

Եվ որովհետև քույրերից ոչ ոք հաշվել չէր իմանում, նրանցից ոչ մեկը չիմացավ՝ քանի՞ օր տևեց այդ տոն-ուրախությունը: Մի գիշեր, երբ երեխաները քնած էին, մարդիկ նրանց վրայից հանեցին գույնզգույն շորերն ու խաղալիքները, ոտքից բռնած քարշ տվեցին, տարան նետեցին բակ: Բակը մռայլ էր ու ցուրտ: «Ինչու՞ եք մեզ տանից վռնդում, — աղերսում էին եղևնիները, — մենք ոչ մի վատ բան չենք արել, մենք սիրեցինք ձեր բալիկներին...»

Շուտով բակում առաջին Եղևնի քույրիկի կողքին հայտնվեց երկրորդը, ապա՝ երրորդը, չորրորդը, ապա եղևնիների մի ամբողջ խումբ գոյացավ: Նրանց վրա դեռ մնում էին ոսկե անձրևի հետքեր, բամբակե ձյան փաթիլներ: Նրանք բոլորն էլ լուռ արտասվում էին: Բայց մարդկանցից ոչ ոք գլխի չընկավ, որ նրանք սիրեցին փափլիկ թաթիկներով մանչուկներին, ու նրանցից բաժանվելու համար են արտասվում: Միայն ծեր աղբահավաքը երևի հասկացավ, երբ առավոտյան աղբի մեքենան բակ բերեց ու գլուխը տխուր տարուբերելով և հոգոց հանելով նրանց մեկ-մեկ հավաքեց ու նետեց մեքենայի մեջ...




*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրության դոկտոր*

## 10. ԲԱՌԱՊԱՇԱՐԸ ՀԱՐՍՏԱՑՆԵԼՈՒ ԱՄԵՆԱԼԱՎ ՄԻՋՈՑԸ

Ամենալավ միջոցը կարդալն է: Բայց ոչ հենց այնպես կարդալը, որ հետևես միայն, թե ինչպե՞ս են զարգանում դեպքերը, հետո ի՞նչ է լինելու, ի՞նչ վախճան է ունենալու վեպը: Հիշում եմ, մեր դասարանում ոմանք չէին համբերում, կարդալիս նկարագրությունները բաց էին թողնում կամ էլ սկզբից թռչում էին գրքի վերջը՝ գործողության վախճանն իմանալու համար:

Մեծ օգուտ չկա այդպիսի ընթերցումից:

Անհամեմատ օգտակար է ոչ թե հենց այնպես, այլ թափանցումո՛վ, տեքստի մեջ խորամուխ լինելո՛վ ընթերցելը: Իհարկե, միանգամայն այլ որակ է՝ կարդալ այնպես, որ թափանցես հերոսների հոգեբանության ու նրանց հարաբերությունների, երկի կառուցվածքի, մանավանդ՝ ոճի ու լեզվի մեջ:

Այս դեպքում մեկ վերադեցնում է վերջին խնդիրը:

Թափանցումի առաջին պայմանն է կարմանքը՝ իմացության առաջին դրդիչն ուժասարակ:

Կան չափից դուրս ինքնավստահ ու ինքնահավան մարդիկ, որոնք ոչ մի բանի վրա չեն զարմանում ու չեն հիանում՝ է՜հ, ի՞նչ է որ, ո՞վ չգիտի որ, ի՞նչ մեծ բան է որ... Դրանք խղճահարության արժանի մարդիկ են, որովհետև իրենք իրենց զրկում են հիանալու բավականությունից ու չեն կռահում, որ դրանով փակում են իմացության դռներից կարևորագույնը:

Ահա ինչու պետք է զարմանալու, հիանալու հատկությունն էլ, ինչպես ամեն մի թանկագին հատկություն, պահպանել ու զարգացնել: Ամեն ինչո՛ւմ ու նաև կարդալիս, նույնիսկ երբ վաղածանոթ մի գրվածք եք կարդում:

Ի՞նչ կա մեզ համար ավելի ծանոթ, քան Թումանյանի «Գիքորը»: Բայց ամեն անգամ կարդալիս պետք է զարմանալ, թե ինչ անհասանելի վարպետությամբ է գրված այդ պատմվածքը, ինչքան պուտ և քիչ, բայց անվրեպ գործի դրված միջոցներով հեղինակը հասել է հուզական-գեղարվեստական անմերժելի ազդեցության:

Ձննենք մի փոքրիկ օրինակ: Գիքորը հոր հետ պետք է ճանապարհվի քաղաք. «Մի խաղաղ առավոտ էր, մի տխուր առավոտ»:— Գրել է Թումանյանը: Նախադասության իմաստը մազաչափ իսկ չէր փոխվի, եթե գրված լիներ. «Մի խաղաղ ու տխուր առավոտ էր»: Ի՞նչ տարբերություն: Մինչդեռ տարբերությունը մեծ է, բնագիրը կրում է հուզական շատ ավելի մեծ բեռ, քան մեր գրածը: Եվ ինչի՞ շնորհիվ՝ մի առավոտ բառի կրկնության և դրա միջոցով ստեղծված ռիթմի: Շատ հասարակ բան՝ կարող է թվալ առերևույթ: Բայց հենց այդ «հասարակ» բաների մեջ է արվեստի գաղտնիքը: Ահա թե հուզական ազդեցության ի՞նչ հնարավորություններ կան թաքնված ոճի ու ռիթմի մեջ: Բայց և՛ մեկի, և՛ մյուսի մասին դեռ առիթներ կունենանք խոսելու:

Դառնանք բառապաշարին:

Կարդալիս հանդիպում ենք անծանոթ բառերի: «Հենց այնպես» ընթերցողը կարդում է ու առաջ գնում, ի՞նչ փույթ, թող այդ բառն էլ չիմանա, մի բան որ տեքստը հասկացվում է, մեկ չի՞:

Ո՛չ, մեկ չի՛:

Ուշադիր, լավ է ասել՝ նախանձախնդիր ընթերցողն այդպես չի վարվի: Նա չի ծուլանա բառարանը բացել և իմանալ բառի իմաստը: Պարույր Սևակը հենց այդպես էր անում: Նշանավոր անհատների վարքագիծը պետք է լինի ոչ միայն հիացմունքի, այլև ընդօրինակման առարկա: Պարույր Սևակին ոչ մի ուժ չէր կարող ստիպել չիմացած բառը կարդալ ու անցնել: Նա պետք է անպայման նայեր բառարանը, գտներ որոնած բառը, նշում աներ, ուրիշ խոսքով՝ հիմնավորապես յուրացներ բառ-հասկացությունը:

Նա ուներ ընդօրինակման արժանի մի սովորույթ ևս՝ բառարան կարդալ: Դա իր սիրած զբաղմունքն էր. ձեռքը կառներ բառարանը և սովոր դիրքով՝ կիսապառկած կտեղավորվեր թախտի վրա ու կկարդար, ինչպես հրապուրիչ մի վեպ: Իսկապես, մի՞թե հետաքրքիր չէ բացել բառարանը և տեսնել ի՞նչ է նշանակում, ասենք թե, *ժամ* բառը: Եվ ի՜նչ. կկարդաք ու կիմանաք, որ *ժամ* նշանակում է ոչ միայն ժամանակը չափելու միավոր՝ հավասար 60 րոպեի, այլև՝

*Ժամանակահատված*, որ հասկացվում է դասա-

խոսության և դա կարող է հավասար լինել 40, 45 կամ 50 բոպեի:

Մանկավարժական դաս, ասում ենք՝ ուսուցիչն այսքան ժամ ունի այսինչ դպրոցում:

Ընդհանրապես ժամանակ, ասում ենք՝ մի տըխուր ժամի, երբ...

Որոշակի ժամանակ, ասում ենք՝ քնելն իր ժամն ունի, պարապելն իր ժամը:

Պատեհ՝ հարմար ժամանակ, ասում ենք՝ ճիշտ ժամին եկար:

Ժամացույցի վրա նշված յուրաքանչյուր թվանշանը:

Նշանակված պահ, ասում ենք՝ այսինչ ժամին կհանդիպենք:

Ժամացույցի կարկը, ասում ենք՝ ժամը խփեց:

Հետըհետե, ասում ենք՝ ժամ առ ժամ:

Սա դեռ ժամ բառը, որ կարծես թե լավ ծանոթ է ամենքիս, հապա՝ մյուսնե՛րը... Ես դեռ այդ բառի բոլոր նշանակությունները մեջ չբերեցի (դա դուք կարող եք իմանալ «Ժամանակակից հայոց լեզվի բացատրական բառարանը» բացելով, ինչպես ես եմ արել): Ես պարզապես կամեցա ցույց տալ, թե ի՛նչ հետաքրքիր բաներ կան բառարանում, ի՛նչ կարևոր գործ են անում բառարան կազմող լեզվագետները և մենք ինչքա՛ն քիչ ենք օգտվում նրանց տքնաջան աշխատանքի արդյունքից, ինչքա՛ն քիչ ենք դիմում բառարանին, կարծելով, թե առանց դրա էլ գիտենք: Մինչդեռ Պարույր Սևակը դիմում էր, թեև նա ամենից քիչ ուներ դրա կարիքը: Եվ եթե նա դարձավ ամենահարուստ բառապաշար ունեցող հեղինակներից մեկը բովանդակ հայ գրականության մեջ, ապա դրա համար նա պարտական էր իր ոչ միայն մեծ ընդունակություններին, այլև բացառիկ աշխատասիրությանը: Ոչինչ առանց աշխատանքի ձեռք չի բերվում, ինչքան էլ տաղանդավոր լինի մարդ: Իրոք որ՝ ով պարի, ո՛չ դալարի:

Կարող եք ասել՝ դե՛, Պարույր Սևակը բանաստեղծ էր, գրականագետ, լեզվաբան, թարգմանիչ, դա իր մասնագիտությունն էր:

Դրան կպատասխանենք՝ լեզուն մի երևույթ է, որ բոլորին վերաբերում է անխտիր. ինչ մասնագիտություն էլ ունենա մարդ՝ նա անխուսափելիորեն գործ է ունենում լեզվի հետ: Այդպես չէ՞:

Եվ եթե բացառիկ տաղանդի տեր մարդիկ այդպես են կարդում գրքերն ու բառարանները, ապա որքա՛ն ավելի ջանադիր պիտի լինենք մենք, սովորական ընդունակությունների տեր մարդիկս, որ շատ ավելի ունենք դրա կարիքը: Ճիշտն ասած, գիտենք էլ, որ դա օգտակար է ու մի դժվար էլ բան չի, բայց չենք անում, ճիշտ այնպես, ինչպես բոլորս գիտենք առավոտյան մարզանքի կարևորությունը, բայց չենք անում: Ծուլանում ենք, ալարում: Կրկնե՛նք նորից՝ ով ալարի...

Այսպես, ուրեմն, բառապաշարի հարստացման ամենալավ միջոցն ուշադիր, թափանցումով ընթերցելն է: Մի քիչ էլ առաջ գնանք. հարկավոր է պահել հատուկ տետր՝ անծանոթ բառերը, հատկապես դուր եկած դարձվածքները գրանցելու համար: Թող դա լինի մեր անձնական բառարանը: Դա պետք է ոչ միայն հետագայում թերթելու համար (կարող եմ երաշխավորել՝ դա գրավիչ զբաղմունք է): Նույնիսկ հետագայում չթերթելու դեպքում էլ դա հարկավոր է, քանի որ գրելու բուն ընթացքն էլ մեծապես նպաստում է յուրացմանը. պատճառն այն է, որ դրան մասնակից են լինում և՛ աչքը, և՛ ձեռքը, և՛ միտքը:

Այսպիսով բառ-հասկացությունն ամուր տպավորվում է մտքում և այնպես ամուր, որ հետո արդեն դյուրությամբ մուծվում է ակտիվ բառապաշարը:

Մենք խոսեցինք մեր բառապաշարը հարստացնելու ամենալավ միջոցի մասին: Բայց կան և ուրիշ միջոցներ ու նաև խաղեր:

Դրանց մասին հաջորդ անգամ:

## Ձմեռ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Ճերմակ ամպը իր ուսից
Մեր ձմեռը վար բերեց,
Փռեց դաշտին ու հանդին
Նվեր տվեց ամենքին.
Սարին՝ թիկնոց ու գդակ,
Ժայռին՝ վզնոց սպիտակ:
Ծածկեց ամեն քար ու թուփ
Ձմեռ տատի շալով նուրբ:

Տիրեց անձայն լռություն,
Գեղեցկությո՛ւն, համրությո՛ւն:
Պսպղացին թուփ ու ծառ.
Խոր լռություն,
Չոր ծիծաղ:
Շողշողացին ձոր ու լանջ,
Պաղ ճառագայթ ու ճաճանչ:

Բայց լեռները զգացին
Երկնքի տակ թափանցիկ.
— Հարկավոր չէ մեզ,— ասին,—
Համրությունը գեղեցիկ:
Եկե՛ք, քնա՛ծ քամիներ,
Խառնե՛ք նախշերը ձյունի:
Թեկուզ հողմ ու բքի մեջ՝
Աշխարհն արթուն թող լինի:

ՓԵՏՐՎԱՐԻ 7-Ը ՊԱՏԱՆԻ ՀԵՐՈՍԻ ՕՐՆ Է

# ՊԱՏԱՆԻ ՀԵՐՈՍՆԵՐԻ ՆՈՐ ԱՆՈՒՆՆԵՐ



## ՄԵՆԱՄԱՐՏ ԳԱՅԼԻ ՀԵՏ

Սագիմբայը տասներկու տարեկան է, իսկ Ռախիմբերդին՝ ընդամենը ութ, բայց նրանք ընկերներ են: Ապրում են մոտիկ, խաղում են միասին, երկուսի ծնողներն էլ հովիվներ են:

1977 թվականի սեպտեմբերյան մի օր տղաները գնացին հոտին ընդառաջ: Ճանապարհին լողացան լճում, հանգստացան, ծմերուկ կտրեցին: Հանկարծ թփուտների միջից դուրս նետվեց քաղցած էգ գայլը և հարձակվեց Ռախիմբերդու վրա: Ամեն ինչ այնքան արագ կատարվեց, որ Սագիմբայը մինչև այժմ էլ չի կարողանում բացատրել, թե ինչպես ինքը համարձակվեց կառչել գայլից, որպեսզի ետ քաշի նրան ընկերոջից: Էգ գայլը բաց թողեց փոքր տղային և հարձակվեց սրա վրա:

— Փախի՛ր տո՛ւն,— գոռաց Սագիմբայը:

Ռախիմբերդին երբեք այդքան արագ չէր վազել: Տո՛ւն, միայն թե շո՛ւտ հանդիպեր մեծերից մեկին:

Ամենից առաջ մեխանիզատոր Վասիլի Գորբոնոսովը վրա հասավ և գնդակահարեց գայլին:

Ղազախստանի պիոներական կազմակերպության հանրապետական խորհրդում հարցրել էին, թե նա ի՞նչ արեց, երբ գայլ-

Եկավ մրցման օրը: Պիոներպալատի սպորտդահլիճը լեփ-լեցուն էր հասակակից հանդիսականներով: Մրցման մասնակիցներից նրանք, ովքեր վստահ էին իրենց հաղթանակին, հրավիրել էին իրենց բակի ու թաղի տղաներին: Միայն ես ու Գագիկը ոչ մեկին ոչինչ չէինք ասել:

— Գոնե Հովիկին ու Բաբկենին տեղյակ պահեինք,— ասացի ես:

— Ինձ թվում է կարիք չկա,— անտարբեր պատասխանեց Գագիկը:

— Կասկածո՞ւմ ես հաղթանակին:

— Ո՛չ: Հաղթելու կամ պարտվելու մասին չեմ էլ մտածում: Կարևորն այն է, որ ընկեր Համբիկը գոհ մնա...

— Եթե պարտվես, էլ ո՞նց պետք է գոհ մնա:

— Իսկ ինչո՞ւ ես կարծում, որ պետք է պարտվեմ,— սրտնեղեց Գագիկը:

— Որովհետև վիճակահանությունը ի վնաս քեզ եղավ: Հենց առաջին օրը մենամարտելու ես Ալիկի հետ...

— Է՜հ, ի՞նչ անենք, ուշ թե շուտ, միևնույնն է, հանդիպելու էինք,— հանգիստ պատասխանեց Գագիկը և ապա հարցրեց.— Իսկ ո՞վ է քո հակառակորդը:

— Չեմ ճանաչում: Միայն գիտեմ, որ ազգանունը Մարտիրոսյան է, անունը՝ Ռուբեն:

— Ես ճանաչում եմ նրան, մեր ուսումնարանից է, խառատների խմբից: Ընկերները մականունը «Թրջված» են դրել...

— Ա՛յ քեզ բան,— դժգոհեցի ես,— էդ թրջվածը հենց ի՞նձ պետք է հանդիպեր: Դուրս է գալիս, որ առաջին ռաունդում նոկաուտի պետք է ենթարկեմ և վերջ...

— Պարտադիր չէ, որ նոկաուտի ենթարկես,— ասաց Գագիկը,— կարող ես նաև միավորներով տանել...

— Թեկուզ միավորներով: Բա մեղք չի՞: Խղճի խայթից գիշերը ո՞նց եմ քնելու...

— Գագի՜կ, Կարե՜ն, ընկեր Համբիկը ձեզ կանչում է, եկեք հանդերձարա՛ն,— լսվեց տղաներից մեկի ձայնը:

Ես ու Գագիկը գնացինք հանդերձարան:

# Բռնցքամարտ

ԿԱՐԼՈՍ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ



լի հետ մնաց մենակ: Սագիմբայը պատասխանել էր, որ մի անգամ լսել էր ծնողների խոսակցությունը մյուս հովիվների հետ: Նրանք ասում էին, որ անզեն մարդը կարող է հաղթել գայլին, եթե հեծնի նրան և ականջները ձգի տարբեր կողմեր: Տղան կարողացել էր ճիշտ այդպես վարվել:

Խիզախության և ընկերական փոխօգնության համար Ղազախստանի պիոներական կազմակերպության հանրապետական խորհուրդը Ջամբուլի մարզի «Չիգանակսկի» շրջանի երեխաներ Սագիմբայ Օթսկելդիևին և Տախիմբերդի Աուգանովին պարգևատրեց պատվոգրով: Իսկ Սագիմբայի անունը ներկայացրեց Վ. Ի. Լենինի անվան համամիութենական պիոներական կազմակերպության Պատվո գրքում գրանցելու:



## ՄԵԴԱԼ ԽԻԶԱ-ԽՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Այդ պատահեց 1975 թվականի ամռանը Լվովի մարզի Ստրիյ քաղաքում: Իգոր Կոզլայը ընկերոջ հետ բակում շաշկի էր խաղում: Հանկարծ նկատեց, որ հարևան տան պատուհանից ծուխ է ելնում: Վեր թռավ, արագ մագլցեց պատուհանն ի վեր, ջարդեց ապակին ու ցատկեց ներս: Սենյակը լիքն էր ծխով: Այրվում էր պահարանը, իսկ երեխաները ճչում ու արտասվում էին: Իգորը անկյունից հանեց երեքամյա Լենային, միջանցքում գտավ հինգամյա Սաշային: Փորձեց դուրս գալ, դուռը փակ գտավ: Ստիպված երեխաներին մոտեցրեց պատուհանին և օգնեց ցած իջնել: Հրշեջ մեքենան արդեն մոտենում էր տանը:

— Ուրեմն այսպես,— մեր թիմի տղաներին դիմեց մարզիչը,— ռինգ եք դուրս գալիս ըստ քաշային կատեգորիաների: Առաջինը՝ Աշոտը, հետո՝ Կարենը, ապա՝ Գագիկը և այնուհետև՝ մյուսները...

Մեր թիմին առաջին հաղթանակը բերեց Աշոտը:

Դեռ չէին լռել Աշոտենց բակի տղաների ուրախ աղմուկն ու ծափերը, երբ ես հաղորդավարի հրավերով, թեթև ու վստահ քայլերով մտա ռինգ և հպարտորեն զբաղեցրի ինձ հատկացված կապույտ անկյունը:

Հակառակորդս ուշանում էր:

«Երևի իմացել է ում հետ գործ ունի՝ վախեցել է ռինգ դուրս գալ»,— մտածեցի ես:

Ընկեր Համբիկը, տեսնելով անհամբերությունս, մեղմ ժպտաց և մտերմաբար ձեռքը ուսիս դնելով, ասաց.

— Մի՛ հուզվիր, Կարե՛ն, հիմա ուր որ է, կերևա...

— Ա՜յդ էր պակաս, որ հուզվեմ:

— Այդպես: Կարևորը չհուզվելն է, թե չէ մեկ էլ տեսար տաքացար ու խփխփան սպորտային մենամարտի փոխարեն, փողոցի կռիվ ստացվեց...

Վերջապես հաղթանդամ մարմնակազմի առջևից շփոթված քայլերով ռինգ բարձրացավ «Թրջված» հակառակորդս: Ցածրահասակ, կլորացած ուսերով և ներս ընկած կրծքով մի տղա էր:

«Հետաքրքիր է, այս «կենդանի դիակի» ինչի՞ն է պետք բռնցքամարտը,— մտածեցի ես,— ձկան յուղ օգտագործելու և կազդուրվելու փոխարեն, բռնցքամարտով է զբաղվում... Ա՜յ քեզ հիմար»...

Ռինգի դատավորը ձեռքով նշան արեց մեզ, որ մոտենանք միմյանց: Մոտեցանք, բարևեցինք, դատավորը մտերմիկ տոնով երկուսիս էլ զգուշացրեց, որ մենք ոչ թե թշնամիներ ենք, այլ՝ ընկերներ, ոչ թե կռվելու ենք, այլ՝ մրցելու...

Հնչեց առաջին ռաունդը ազդարարող գոնգի ձայնը: Սկզբում ես մկան հետ խաղ անող կատվի բավականությամբ միայն ձախ ձեռքով հեռահար հարվածներ էի հասցնում, բայց տեսնելով, որ «Թրջվածը» խնամքով խուսափում է իմ հարվածներից՝ սկսեցի գրոհել ինչպես հարկն է... Հակագրոհի անցած «Թրջվածի» շեշտակի հարվածները մի պահ հավասարակշռությունից հանեցին ինձ: Ճիշտն ասած, ոչ այնքան «Թրջվածի» շեշտակի հարվածներն էին ինձ զայրացնում, որքան նրա թաղի տղաների ծաղրալից բացականչությունները:

— Կեցցե՜ս, Ռուբի՛կ, մի հա՛տ էլ հասցրու էդ խրտվիլակին...

— Էնպե՜ս հասցրու, որ իրենց տան տեղը չգտնի...

— Զգո՜ւյշ խփիր, որ մորթին չփչանա...

«Դե լա՛վ, հիմա ես ձեզ ցույց կտամ»,— մտովի սպառնացում էի «Թրջվածի» թաղի տղաներին և կատաղած նետվում գրոհի:

— Կարե՛ն, հավաքի՛ր կեցվածքդ և մի՛ տաքանա,— պարզորոշ լսում էի ընկեր Համբիկի դժգոհ ձայնը:

Եթե ընկեր Համբիկի հետ մեկտեղ ամբողջ աշխարհն էլ նույնը ասեր, միևնույնն է, ես չէի լսի, որովհետև այդ պահին իմ միակ ցանկությունն էր, ինչ կերպ ուզում է լինի՝ ուժեղ ու շեշտակի հարվածով «Թրջվածին» նոկաուտի ենթարկել... Բայց գնալով ավելի հաճախակի էին դառնում ծնոտիս դիպչող հարվածները: Եվ զայրացուցիչն այն էր, որ յուրաքանչյուր հարված ուղեկցվում էր «Թրջվածի» թաղի տղաների ծաղրալից բացականչություններով:

Հերթական գրոհներից մեկն ավարտվեց «Թրջվածի» դիմահար հակահարվածով: Անսպասելիորեն ինձ զգացի ծնկած վիճակում...

— Մե՛կ, երկո՛ւ, երե՛ք,— բռունցք արած ձեռքի մատները հերթականորեն բացելով, բարձրաձայն հաշվեց ռինգի դատավորը:

Օրորվելով ոտքի կանգնեցի և մի կերպ համապատասխան կեցվածք ընդունելով՝ հասկացրի, որ ի վիճակի եմ մարտը շարունակել: Սակայն ընկեր Համբիկն արդեն սրբիչը նետել էր ռինգ, ի նշան այն բանի, որ դադարեցվի մարտը...

Հաղթանակը շնորհվեց «Թրջվածին»:

— Ինչո՞ւ չթողեցիք, մինչև վերջ մարտնչեմ,— հանդերձարանում դիմելով ընկեր Համբիկին, դժգոհեցի ես:

Ընկեր Համբիկը բարեհոգի ժպիտը դեմքին, պատասխանեց.

— Դու այլևս ի վիճակի չէիր...

— Իսկ ո՞վ ասաց, որ ի վիճակի չէի,— առարկեցի ես,— արդեն լրիվ սթափվել էի և ուժերս էլ տեղն էին...

— Բարեբախտաբար, բռնցքամարտը միայն ուժի սպորտ չէ,— այս անգամ արդեն չոր ու կտրուկ պատասխանեց ընկեր Համբիկը և մտերմաբար աչքով անելով Գագիկին, ասաց.— Դե, գնացինք, արծի՛վ, հուսով եմ, որ սևերես չես անի...

Գագիկը ժպտաց և լուռ հետևեց ընկեր Համբիկին:

Վիրավորված արժանապատվությանս հագուրդ տալու համար, ծեծված դեմքս թաքցնելով ձեռքիս ափերի մեջ՝ կուչ եկա և ապա փոքր-ինչ թեթևացած գնացի դիտելու այդ օրվա ամենահետաքրքիր ելույթը՝ Գագիկի և Ալիկի մենամարտը:

Դահլիճում քար լռություն էր տիրում: Կարծես ոչ թե բռնցքամարտի մրցություն էր, այլ մի կատարյալ բալետ: Իսկապես, Գագիկի և Ալիկի մենամարտը բավականին գեղեցիկ էր ու լարված:

Առաջին ռաունդը ավարտվեց գրեթե հավասար պայքարում: Երկրորդ ռաունդում Գագիկի առավելությունը ակնհայտ էր: Իսկ երրորդ ռաունդում՝ Ալիկն այլևս չկարողանալով դիմանալ Գագիկի հարձակումներին ու խելացի գրոհներին՝ անցավ խորը պաշտպանության: Ինչպես բռնցքամարտում է ընդունված ասել՝ Ալիկը Գագիկի արագ ու շեշտակի հարվածներից խուսափելու համար, ռինգի «հինգերորդ» անկյունն էր փնտրում...

Եվ քանի որ դահլիճում բացարձակ լռություն էր, ուստի ես հրճվանքից խեղդվելով, մտովի էի արդեն լրիվ սպառել «Թրջվածի» թաղի տղաներից լսածս արհամարհալից բացականչությունները՝ հասցեագրված Ալիկին...

Այդ օրվա մրցությունը ավարտվեց մեր խմբի տղաների բացարձակ հաղթանակով: Միակ պարտվածը ես էի: Սակայն Գագիկի կարևոր հաղթանակը ինձ դուրս հանեց ամոթալի վիճակից և ես այնքան էլ խորը չզգացի պարտության դառնությունը:

Տուն վերադառնալիս Գագիկն այնպես էր ձեռքը դրել ուսիս, որ կարծես ոչ թե ինքը, այլ ես էի հաղթել Ալիկին:

— Ա՛յ թե ջարդ տվեցիր այդ ինքնահավանին,— ասացի ես:

— Կարծում ես դու պակա՞ս ջարդ կտայիր, եթե չտաքանայիր ու չարհամարհեիր հակառակորդիդ....

— Մի՛ մխիթարիր, դրա կարիքը չունեմ:

— Հո՞րս արև, ճիշտ եմ ասում,— երդվեց Գագիկը:

Ես էլ գիտեի, որ ճիշտ է ասում:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



Տասներկու տարեկան Իգոր Կուցայը ստացավ «Հրդեհի ժամանակ ցուցաբերած արիության համար» մեդալ:



## ՊԱՏԱՀԱՐ ՍԱՀՄԱՆԻ ՎՐԱ

Կայսար Սաիդնասիմովը ապրում է Պամիրում, Տաջիկստանի Գորնո-Բադախշանսկի մարզում: Նրա հայրենի գյուղը հինգ հարյուր մետր է հեռու սահմանից: Կայսարը չորրորդ դասարանցի էր, երբ ահա թե ինչ պատահեց: Գարնանային մի օր նա դպրոցից տուն էր գնում: Հանկարծ նկատեց, որ մի անծանոթ մարդ սահմանային գետը կտրելով մոտենում է մեր ափին: Կայսարը թաքնվեց քարերի ետևում և հետևեց անծանոթին: Լեռնային գետը սառն ու արագահոս էր և դժվար էր այն լողալով անցնել: Իսկ մարդը գլխավերևում պահել էր ցելոֆանե տոպրակ, որի մեջ շալվարն ու դեղնագույն բարձրակոշիկներ կային: Կայսարը ելավ թաքստոցից ու սլացավ դպրոց և տեսածը պատմեց ուսուցչին: Ուսուցիչը զանգեց ուղեկալ, իսկ ինքն ու Կայսարը շտապեցին գետի մոտ:

Անծանոթը նոր էր ափ դուրս եկել և հագնվում էր: Երբ ուսուցիչն ու Կայսարը մոտեցան, նա առանց դիմադրություն ցույց տալու թույլ տվեց իրեն դպրոց տանել: Սահմանը խախտողին փակեցին դիրեկտորի աշխատասենյակում: Շուտով եկան նաև սահմանապահները:

Կայսար Սաիդնասիմովը պարգևատրվեց «ՍՍՀՄ պետական սահմանը պահպանելու գործում աչքի ընկնելու համար» մեդալով:

## ՓԵՏՐՎԱՐԻ 7-Ը ՊԱՏԱՆԻ ՀԵՐՈՍԻ ՕՐՆ Է



# ՓՐԿՎԵՑ ՄԻ ԿՅԱՆՔ

Սեպտեմբերյան վաղ առավոտ էր: Երևանի Արովյանի անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ Արմեն Հակոբյանը 6-րդ դասարանցի Արթուրի հետ դպրոց էր գնում: Հանկարծ լճակի կողմից տարօրինակ ձայներ լսվեցին: Շտապեցին այնտեղ: Լճակի ամենախորը մասում նկատեցին մի կնոջ, որը մանկանը գրկած մերթ ընկղմվում էր լճի հատակը և մերթ ջրի երես դուրս գալիս: Վախից ու տագնապից կինը կորցրել էր իրեն, իսկ փոքրիկն անշարժ էր նրա գրկում: Արմենը պայուսակը տվեց ընկերոջը, հանեց կոշիկներն ու նետվեց ջուրը:

Ուժասպառ մայրը մի պահ կարծես չէր ուզում երեխային ձեռքից բաց թողնել, չէր վստահում տասներեքամյա պատանուն: Բայց տեսնելով Արմենի վստահ լողը, լրջահայաց դեմքը, կծկած բազուկները շտկեց: Երկամյա տղան Արմենի ձեռքում էր արդեն: Փոքրիկին գրկած նա լողաց դեպի ափ, սակայն ուղղվելուն պես ոտքերը սահեցին մամռապատ, թեք բետոնի վրա և երկուսով կրկին գլորվեցին ջրի մեջ: «Ահա թե ինչու մայրը չէր կարողանում մոտենալ ափին»,— մտածեց Արմենն ու արդեն լողալով մոտեցավ լճեզրին: Այնտեղ խմբված մարդիկ փոքրիկին վերցրին նրա ձեռքից: Ափից նետված թոկից բռնելով, ջրից դուրս եկավ նաև երեխայի մայրը:

Փոքրիկին իսկույն տարան լճակի մոտի սրճարանը: Նա բավականին ջուր էր կուլ տվել: Ի վերջո, երբ երեխան բացեց աչուկներն ու զարմացած նայեց շուրջը, Արթուրը նոր միայն զգաց, որ լարումից և մարմնին կպած թաց շորերի սառնությունից դողում է:

— Արմենը դասերի վերջում եկավ,— ասաց դասղեկ ընկ. Սվետլանա Թովմասյանը,— և այնքան ի միջի այլոց պատմեց կատարվածի մասին, առանց ընդգծելու իր դերը, որ բան չհասկացվեց: Միայն հետո իմացանք, որ նա ջրից հանել, փրկել է մի փոքրիկի կյանք:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ



# ԻՄԱՍՏՈՒՆՆԵՐԸ

(Փոխադրություն)

ԱՐՏԱՄԱՅԻՍ ՄԱՀԱԿՅԱՆ

Տաս իմաստուն մի անգամ ճաշկերույթի գնացին,
Մեկը կերավ այնքան շատ՝ որ ինն հոգի մնացին:
Սրանք դրսում քնեցին: Անձրև եկավ անհոգի,
Մեկը թրջվեց այնքան շատ, որ մնացին ութ հոգի:
Ընկերն իսկույն այդ վշտից իրեն նետեց գետը մոտ,
Եթե ութից հանենք մեկ, ի՞նչ կստացվի, պարզ է՝ յոթ:
Յոթից մեկը քիչ հետո հանգստանալ որոշեց:
Ափոռ կարծեց ջրհորը... և յոթ հոգին դարձավ վեց:
Պահեստի մոտ վառոդի մեկը ծխեց շատ սաստիկ,
Նետեց լուցկու հատիկը.. և վեց հոգին դարձավ հինգ:
Այս հինգ հոգին փորձեցին վիշտը ցրել՝ անել որս,
Այնքան դիպուկ խփեցին, որ հինգ հոգին դարձավ չորս:
Շփոթված ու գլխիկոր՝ ծով գնացին չորս հոգով,
Նրանք չորսով սուզվեցին, բայց դուրս եկան երեքով:
Երեքից մեկն առյուծի վանդակի մոտ սպասեց,
Արհամարհեց առյուծին, և մի հոգի պակասեց:
Մեծ քաղաքում երկուսը գրոսնեցին մոլորված,
Այնքան մոլոր, որ շուտով մեկին տեսան գլորված:
Վերջին՝ մեկն էլ այնպիսի չար կին ընտրեց, բերեց տուն,
Որ տաս հոգուց չմնաց արդեն ոչ մի իմաստուն...

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ









Նոդար Դումբաձեն վրաց նշանավոր գրողներից է: Ծնվել է 1929 թ. Թբիլիսիում: Արժանացել է միութենական և հանրապետական մրցանակների: Վրացական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ է: Նրա ստեղծագործությունները թարգմանվել են աշխարհի շատ ժողովուրդների լեզուներով:



# HELLADOS

*ՆՈԴԱՐ ԴՈՒՄԲԱՁԵ*

Սուխումցի հույն Խրիստո Ալեքսանդրիդի տղան էր Յանգուլը: Տաշեղի պես նիհար էր, լայնաթիկունք, հարթ թիակներ, ուղիղ, գեղեցիկ քիթ, ածուխի պես սև աչքեր և կապիկի նման երկար ձեռքեր ուներ, այնքան երկար, որ կանգնած ժամանակ հսկայական թաթը հասնում էր ծնկներին: Տասնչորս տարեկան էր: Ուլածիդ պես կռվել գիտեր: Երկու-երեք հոգու այնպես գետնին կշպրտեր, աչքն էլ չէր թարթի: Կատվի պես ճկուն էր, արագաշարժ, առողջ և պնդակազմ: Ամառ-ձմեռ սև սատինե խալաթով էր և որպես կանոն՝ կուրծքը միշտ բաց:

Հոր հետ ապրում էր Չալբաշ գետի ափին, Վենետիկյան խճուղու վրա: Տնամերձ փոքրիկ հողամաս ունեին՝ թպաչափ բանջարանոցով, մի կով և մոխրագույն մի էշ: Կաթ, մածուն ու՝ բանջարեղեն էին վաճառում և այդպես հոգում իրենց ապրուստը: Ոչ մի տեղ չէր սովորում, տնտեսության մեջ օգնում էր հորը, մեկ-մեկ էլ մոխրոտին առաջն արած ծախել-առնելու էր գնում: Մնացած ժամանակ թափառում էր: Երբեմն կանգնում էր երկաթգծի կամրջի մոտ և դատարկում դպրոցից տուն վերադարձող երեխաների գրպանները. կռվով կամ առանց ճիգի խլում էր ծխախոտ, մանր դրամ, պիպի-բիպի բաներ, շղթաներ, գունավոր մատիտներ, գրչակոթեր: Կողոպուտը հաջորդ օրը շահավետ գնով վաճառում էր նույն երեխաներին, հետո նրանց իսկ փողերով խաղում, հաղթում, լցնում գրպաններն ու վերադառնում տուն:

Եվ այդպես ամեն օր:

Վենետիկյան խճուղու բոլոր տղաները, այդ թվում և իմ մորաքրոջ տղան՝ Կոկան, ստրուկի պես հնազանդվում էին այդ տասնչորսամյա ինքնակալին:

Թաղի ղոչն էր Յանգուլը:

Մեր ծանոթությունը կայացավ 1938 թվականի աշնանը:

Որպեսզի որբություն չզգամ, Թբիլիսիից ժամանելուս հաջորդ իսկ օրը, մորաքույրս՝ Նինան, ինձ տարավ Սուխումիում մեծ անուն հանած երաժշտության դասատու Ելենա Միխայլովնա Նավրոզսկայայի մոտ:

— Որբ է, մայրը վիոլինոյի դասերի էր ուղարկում: Որպեսզի խորթություն ու որբություն չզգա, չմերժեք, խնդրում եմ: Ուրիշներից ինչքան վերցնում եք, երկու անգամ ավելի կվճարեմ, միայն թե վերցրեք երեխին,— ծնկաչոք աղերսում էր մորաքույր Նինան:

Նավրոզսկայան նախ լռությունս ստուգեց, հետո՝ նոտաներ կարդալու իմ ունակությունը, նայեց մատներիս, ձեռքով շոշափեց կզակիս տակի կոշտուկը, անվճռական նայեց ինձ, հետո մտավ մի ուրիշ սենյակ, ջութակը բերեց, լարից գցեց և հանձնարարեց լարել:

Մորաքույրս վախեցած նայում էր ինձ, բայց ջութակը լարեցի թե չէ, պայծառացավ և թեթևացած շունչ քաշեց:

— Բեթհովենի «Արջամո՛ւկը» նվագիր, տեսնենք,— ասաց Ելենա Միխայլովնան, ընկղմվեց բազկաթոռի մեջ և պատրաստվեց լսելու:

Բեթհովենի անունը լսելուն պես մորաքրոջս գույնը թռավ:

— Ելե՛նա Միխայլովնա, գուցե ուրիշ, ավելի փոքր կոմպոզիտորից հարցնեք,— խնդրեց Նավրոզսկայային և թաշկինակով սրբեց ճակատին ցողված քրտինքի կաթիլները:

— Ինչպե՞ս, մի՞թե «Արջամուկ» չի նվագում,— հարցրեց զարմացած Նավրոզսկայան և հոնքերը վեր քաշեց:

Ես զգացի, որ վերջապես եկել է երանելի մի պահ, երբ ընդամենը մի խոսքով կարող եմ թոթափել երաժշտական ստրկության ծանր լուծը, լուծ, որ մայրս դրեց իմ ուսերին, երբ վեց տարեկան էի, բավական էր մոգական մի բառ՝ «ոչ» և ամեն ինչ վերջանար, բայց չգիտեմ մորաքրոջս տանջահար տեսքը, Նավրոզսկայայի ապշած հայացքը, տասներեքամյա տղայի անսահման պատվասիրությո՞ւնը, թե՞ ինչ-որ ներքին ուժ ստիպեց վերցնել ջութակի աղեղը: Սենյակը ողողվեց «Արջամուկի» պարզ ու հանճարեղ մեղեդիով:

Երբ վերջացրի, մորաքույր Նինայի աչքերը լճացել էին, իսկ Նավրոզսկայայի դեմքը պարզապես շողում էր:

...Եվ Ելենա Միխայլովնա Նավրոցկայան վերցրեց ինձ:

Տուն վերադառնալիս, երբ մոտեցանք երկաթգծի կամրջին, Յանգուլը քարե սանդուղքին նստած ընկույզ էր ջարդում:

— Բա՛րև Ձեզ, Նի՛նա Իվանովնա,— կողքից անցնելիս ողջունեց մորաքրոջս:

— Բարև՛,— սառը և կտրուկ պատասխանեց մորաքույրս:

— Կոկան ո՞ւր է:

— Կոկան քեզ նման անբան չի, դպրոցում է:

— Դա ո՞վ է:

— Քե՛զ ինչ,— ասաց մորաքույր Նինան և ինձ հրեց առաջ:

Յանգուլը պիլ սուլեց: Մենք շարունակեցինք ճանապարհը:

— Էէ՜յ, սկի՜պկա:

Զարմացած ետ նայեցի:

Յանգուլը աչքով արեց, վիզը թեքեց ձախ, լեզուն հանեց և աջ ձեռքը սղոցելու նման սկսեց տանել-բերել ձախի վրա: Ջութակ նվագելու հանգն էր անում ու ծաղրում ինձ:

— Կապի՜կ,— կայրացած գոչեցի ես ու բռունցքս թափ տվեցի:

— Էգուց մոտս կգաս, սղոցելու փայտ ունեմ:

— Դու դեռ անկարգությո՞ւն ես անում,— գլուխը անբավական տարուբերեց մորաքույրս:

— Ո՞վ է,— հարցրի ես:

— Յանգուլն է: Նրա հայրը մեզ համար կաթ է բերում: Չըլնեմ չիմանամ դրա հետ ընկերություն անես, կապը կտրածի մեկն է, գիշեր-ցերեկ թրև է գալիս:

Նորից ետ նայեցի: Յանգուլը ջարդած ընկույզները ջոկում էր ու քմծիծաղում:

Տասներեքերորդ դպրոցը հաճախելու համար, ուր տեղավորել էր ինձ մորաքույրս, ստիպված պետք է անցնեի երկաթգծի կամրջով, այնպես որ իմ և Յանգուլի ամենօրյա հանդիպումները անխուսափելի էին:

Մոտավորապես մի ամիս ուշադրության չարժանացրեց ինձ: Ինչպես միշտ, թաղի տղաների մեջ կանգնած կամ կոճ էր խաղում, կամ՝ կռիվ-կռիվ:

Ամեն անցնելիս հայացքս կորսար՝ առանց վայրկյան կորցնելու, մեկի գլխարկը աչքերին կքաշեր, մյուսին ոտք կգցեր, երրորդին կբամփեր կամ խեթ-խեթ իմ կողմը կնայեր:

Ես ինձ այնպես էի պահում, իբր թքել եմ Յանգուլի էլ, նրա արարքի վրա էլ: Ճիշտն ասած, հոգուս խորքում փափագում էի մոտիկանալ տղաներին և Յանգուլի նման ցույց տալ, թե ինչ շենք ու շնորհքի տեր եմ, բայց թաղին՝ անծանոթ, ո՛չ ընկեր ունեի, ո՛չ բարեկամ, ո՛չ էլ դամքաշ, կողքիս միայն մորաքրոջս տղան էր՝ Կոկան: Թերևս այդ էր պատճառը, որ չէի համարձակվում խառնվել նրանց: Մի բան սակայն



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



պարզ էր, մեր հարաբերությունը վառոդի պատրույգի նման վառվում էր, աստիճանաբար կարճանում, մոտենում պիստոնին և մի գեղեցիկ օր պետք է պայթեր:

...Ուղիղ մի ամիս հետո եկավ այդ օրը:

Ելենա Միխայլովնայի մոտ ուրիշ աշակերտ կար, նախասենյակում նստած հերթիս էի սպասում:

Կլոր սեղանի վրա ակվարիում էր դրված, որի մեջ ջրաբույսերի, գեղեցիկ խեցիների ու քարերի արանքում, պոչները հովհարի նման թափահարելով, ոսկե ձկներ էին լողում, և բերանները ծիծաղելիորեն բացուխուփ անելով՝ պղպջակներ արձակում: Ինձ, չգիտեմ ինչու, թվաց թե ձկները քաղցից են բերանները բացուխուփ անում: Թղթի մեջ փաթաթած սև հացի ու պանրի բուտերբրոդը անմիջապես հանեցի գրպանիցս, մանրեցի ու թափեցի ակվարիումի մեջ: Ջրի երեսը ծածկվեց սև հացի ու պանրի փշրանքներով: Ձկները նախ ընկրկեցին, թաքնվեցին քարերի ու խեցիների արանքում, հետո, ասես հասկանալով իմ բարի ցանկությունը, դուրս եկան թաքստոցից ու մոլեգնած հարձակվեցին ուտելիքի վրա:

Անսահման գոհունակությամբ նայում էի ոսկե վտառի սրընթաց շարժումներին: Ակվարիումը փոքրիկ օվկիանոսի նման հուզվում ու փոթորկվում էր: Ինքնամոռաց ձկները գալարվում-պարում էին: Հետո կամաց-կամաց դադարեցրին խաղը: Ակվարիումը հանդարտվեց ու հանգստացավ: Փորները տռուզ ձըկները ծույլորեն լողում էին խեցիների ու քարերի արանքում, հերթով մոտենում ապակե պատին, պոչները շարժում, շուռումուռ գալիս, ասես շնորհակալություն էին հայտնում ինձ: Նրանցից ամենամեծը հանկարծ շրջվեց ու սկսեց երեսնիվեր լողալ: Շշմած կանգնել դիտում էի այդ տարօրինակ և հետաքրքիր տեսարանը: Շուտով նրա օրինակին հետևեցին նաև մյուսները: Ակվարիումը ասես գլխիվայր շրջել էին, բոլոր ձկները երեսնիվեր լողում ու արագ-արագ աշխատում էին խռիկներով... Ձեռքս մտցրի ջրի մեջ ու փորձեցի ձկներին փորի վրա պառկեցնել, իզուր, նրանք անմիջապես շրջվում էին մեջքի վրա: Ձեռքս իսկույն ջրից հանեցի: Զգացի, որ սարսափելի բան կատարվեց: Կյանքը շատ արագ մարեց ակվարիումի մեջ: Նահատակված ոսկե ձկները լողում էին ջրի երեսին: Մարմինս փշաքաղվեց: Ձեռքս առա ջութակը և այն է՝ պատրաստվում էի փախչել, երբ սենյակի դուռը բացվեց ու շեմքին երևաց Ելենա Միխայլովնան: Նա ինչ-որ հանձնարարություններ տալով՝ ուղեկցում էր ինձնից առաջ եկած աշակերտին:

— Նե՛րս մտիր,— աշակերտին ճամփելուց հետո դիմեց ինձ:

Ես քարացած կանգնել էի:

— Նե՛րս մտիր, նե՛րս,— կրկնեց նա, ձեռքը դրեց ուսիս և թեթևակի հրեց դեպի դուռը:

Տեղիցս չշարժվեցի:

— Դասդ չե՞ս պատրաստել,— խստորեն հարցրեց Ելենա Միխայլովնան, և քանի որ ձայն չհանեցի, զարմացած նայեց իմ քարացած հայացքի ուղղությամբ:

...Պատահեց այն, ինչ ֆիտիոլոգները միայն կարող են պատկերացնել: Ելենա Միխայլովնան հնձված հասկի նման փլվեց բազկաթոռին և դողդոջուն ձայնով հարցրեց.

— Ты что наделал, паршивый мальчишка?!

— Ես չգիտեի, Ելե՛նա Միխայլովնա, ես միայն սև հաց ու պանիր փշրեցի...

— Отравил!

Հետո գլուխն առավ ձեռքերի մեջ և որդեկորույս մոր նման սկսեց թնռանչել: Հիշում եմ՝ ինչպես էի բարբաջում, արդարանում, փորձում որևէ կերպ հանգստացնել երաժշտության դասատուին, բայց՝ անօգուտ... Նա ծանր ոտքի ելավ, մոտեցավ ակվարիումին, անշունչ ձկներին մեկ-մեկ հանեց ջրից, համբուրեց, զգուշությամբ նորից իջեցրեց ակվարիումի մեջ, միաժամանակ սրտաշարժ խոսքերով փաղաքշում էր.

— Милые мои, золотые, ненаглядные, отравили, убили вас?

Հետո շրջվեց իմ կողմը: Շրթունքները կապտել, փայտացել էին, ծնոտները կափկափում էին, իսկ աչքերից հեղեղի պես արցունքներ էին թափվում: Խելագարի հայացքով նայեց ինձ, ձեռքը տարավ-բերեց և այնպիսի ապտակ հասցրեց դեմքիս, որ աչքերիս առաջ մթնեց, ես երերացի, բայց մի կերպ ինձ պահեցի, որ չընկնեմ:

— Вон из моего дома, варвар. Чтоб твоей ноги не было больше здесь! Вон!

Ապտակն ու արցունքները միասին կուլ տվեցի:

Ջութակը դրեցի թևիս տակ ու սուսուփուս ծածկեցի դուռը:

Ծեծված, ամոթահար, ոչ մեռած, ոչ կենդանի, ոտքերս քարշ էի տալիս դեպի տուն:

Երկաթգծի կամրջի մոտ Յանգուլն ու նրա դամքաշները կռիվ-կռիվ էին խաղում: Ներքին մի ուժ ինձ նրանց կողմը հրեց: Տղաներին մոտենալիս՝ քայլերս ավելի դանդաղեցրի, հետո կանգ առա, կռացա, իբր կոշիկիս քուղն էի կապում:

— Է՜յ, սկրի՛պկա,— Յանգուլն էր:

Ուղղվեցի ու նայեցի նրա աչքերի մեջ:

— Ի՞նչ:

— Էստե՛ղ արի,— մատով արեց:

— Գո՞րծ ունես՝ դո՛ւ արի:

Ապուշ կտրած Յանգուլը նայեց իրենից առավել ապուշ կտրած դամքաշներին և դանդաղ քայլերով մոտեցավ ինձ:

— Դու գիտե՞ս ով եմ ես:

— Գիտեմ:

— Բա որ կանչում եմ, ինչի՞ չես գալիս:

— Դու ով ես, որ քո կանչելով գամ,— պատասխանեցի և ջութակը դրեցի գետնին:

Ապուշ կտրած Յանգուլը կրկին նայեց իր տղաներին: Նրանք խաղը անմիջապես դադարեցրին ու մեկ կալմեջ արին:

— Յանգո՛ւլ, քիթ-մթուղը պռմիդո՞ր արա, որ իմանա ով ես:

— Շա՛ն ծեծ տուր, Յանգո՛ւլ:

— Ուզածիդ պես սիլլա՛ կերցրու:

— Դեռ մի տեսնենք ինչ տղա է,— ասաց ու մատներով շոշափեց այտերս:

— Չաքլոթանաս:

— Օհո՜, սրա՛ն մի նայիր,—զարմացավ Յանգուլը:

— Լա՛վ նայիր, որ չմոռանաս:

— Ծխելիքդ:

— Չեմ ծխում:

— Փողերդ:

— Չունեմ:

— Գրպաններդ շրջի՛ր:

— Սրտոտ տղա ես՝ ի՛նքդ շրջիր:

Տղաները սկսեցին փսփսալ: Յանգուլը կարկամեց, բայց հարցը չկորցրեց ու շարժվեց դեպի ջութակը:

— Ձեռք չտա՛ս,— գոչեցի ես ու ձեռքս տարա ջութակին:

Յանգուլը խեկույն վերցրեց, կափարիչը բացեց, ջութակը հանեց ու մեկնեց ինձ:

— Դե, նվագիր, տղաները լսեն:

— Չեմ նվագի:

— Բա ինչի՞ ես հետդ քարշ տալիս, համբա՛լ ես:

Ոչինչ չպատասխանեցի, փորձեցի ջութակը ձեռքից վերցնել: Յանգուլը ետ-ետ գնաց ու գործիքը թաքցրեց ետևում:

— Պե՛տյա, Ֆեդո՛, Կարլի՛կ, Պանչո՛, Տենո՛, սկրիպկի ձայն լսած կա՞ք,— հարցրեց տղաներին:

Տղաները մարուկների նման խրխնջացին:

— Մենակ ռադիոյով,— ասաց Պետյան ու կրկին խրխնջաց:

— Յանգո՛ւլ, դե նվագեցրո՛ւ, տեսնենք:

Ջութակի ձայնը բոլորից շուտ ես լսեցի: Յանգուլը այն բարձրացրեց ու թափով իջեցրեց գլխիս՝ զրը՞ր, ծկը՞ր,— հառաչեց ջութակն ու երկու կտոր եղավ: Ներքևի մասը կոտրված ձեռքի նման կախվել, ճռճռվում էր ու խուլ ձայն էր հանում: Սիրտս ասես կանգ առավ: Արյունը խփեց գլխիս ու լցվեց ականջներիս մեջ: Ոչինչ չէի լսում, աղոտ կերպով տեսնում էի գետնին նստոտած տղաներին, կոտրված ջութակն ու Յանգուլի առաջ ցցված, սուր կզակը: Ինչքան ուժ ու կորություն ունեի՝ բռունցքով խփեցի նրա կզակին...

Երբ կրկին ուշքի եկա, Յանգուլը սանդուղքին նստած, ապշահար նայում էր ինձ և աջ ձեռքով շոշափում կզակը: Գերեզմանոցային լռություն էր: Ես լուռ շրջվեցի ու գնացի տուն:



Յանգուլի աջ թևը՝ մեր հարևան Պետյան, ջարդված ջութակն ու պատյանը երեկոյան բերեց մուտքի մոտ թողեց ու փախավ: Մորաքույրս նախ անակընկալի եկավ, ապա հոգին հանգստացնելու համար մոտավորապես այսպիսի խոսքեր հասցեագրեց Պետյային, ջութակին, Յանգուլ Ալեքսանդրիդին, ինձ, իսկ վերջում՝ մայրիկիս.

— Քեզ նման հասիլ չեկած մի գաճաճ էլ Պետյան է... Դու և քո կանաչի ծախող հերը թացը չորից չեք ջոկում, ջութակը ձեզ ի՞նչ լայեղ է, Ստրադիվարիուսն ու Պագանինին ձեզ համար սղոց քաշողներն են... Թաղեմ Յանգուլ Ալեքսանդրիդի բոյը, էշի գոռոցի տակ մեծացած քուռակը ինչ իմանա՝ երաժշտությունն ինչ է... Նոր ես օջախս ոտք դրել, խույիգան արև՞դ մեռնի... Ջրատար ու անբախտ Անիկո՛ջան, իմ դարդն ու ցավը քի՞չ էր, գնացիր ու էս դաշաղին վիզս թողիր, վա՜յ իմ օր ու արևին...

Դրանով վերջացավ երաժշտական ոդիսականս և իմ կյանքում սկսվեց նոր շրջան:

Հաջորդ օրը Յանգուլը և Պետյան դպրոցի դարպասի մոտ դիմավորեցին ինձ ու մորաքրոջս տղային՝ Կոկային: Սիրտս սկսեց ուժգնորեն բաբախել, բայց այնպես անցա նրանց կողքով, ասես երեկ մեր միջև ոչինչ չէր պատահել:

— Սկրիպկաա՜.— Պետյան էր:

Ես կանգ առա:

— Քեզ հետ խոսելիք ունեմ,— ասաց Յանգուլն ու մոտեցավ ինձ:

— Ի՞նչ խոսելիք:

— Էստեղ հարմար չի,— Յանգուլը աչքով ցույց տվեց դպրոցից դուրս եկող աշակերտներին և ուսուցիչներին:

— Բա որտե՞ղ է հարմար:

— Երկաթգծի կամրջի տակ:

— Քեֆդ ուր էլ տա,— պատասխանեցի ու հետեվեցի նրան:

Առջևից Յանգուլն էր գնում, հետևից՝ ես ու Կոկան, մեկնից, փոքր ինչ հեռու՝ Պետյան: Երևի հսկում էր, որ չփախչենք:

— Մեր վերջը եկավ,— ասաց Կոկան:

Կոկան երկու տարով փոքր էր ինձանից և մի անգամ չէ, որ կզացել էր Յանգուլի ապտակի համը:

— Մի՛ վախենա,—հանգստացրի ես, թեև անկեղծ ասած, ես նրանից պակաս չէի վախենում:

Կամրջին մոտեցանք թե չէ՝ Կոկան փորձեց փախչել: Դասատակը բռնեցի և ինչքան ուժ ունեի սեղմեցի:

— Ամո՛թ է, Կո՛կա, չփախչես:

— Դու դրան չես ճանաչում, երկուսիս էլ կջարդի,— հառաչեց Կոկան:

— Հետո ի՞նչ, հո չի՞ սպանելու:

Կոկան դժկամորեն հետևեց ինձ:

Երկաթգծի կամրջի տակ Յանգուլը կանգ առավ և դեսուդեն նայեց: Շրջակայքում ոչ մի շունչ չէր երևում: Մենք էլ կանգ առանք:

— Ահա եկա, ի՞նչ ես ուզում,— հարցրի ես:

Յանգուլը գլուխը կախ խորհում էր:

— Տղաների մոտ երեկ դու ինձ ամոթով թողիր, քո մի հարվածից ընկա, միամիտ խփեցիր, դրա համար ընկա: Ինչքան էլ փորձեցի վեր կենալ պատասխանել՝ չկարողացա,— նրա հանգիստ ու անկեղծ տոնը ամեն ինչ փչացրեց,— բայց ես էս թաղի դոչն եմ, դոչ էլ կմնամ:

— Ես քո թաղի դոչը դառնալու միտք չունեմ, վաղն անցիր ինձանից:

— Ինձանից որ մեծ լինեիր՝ քեզ կպիջեի, բայց մի տարով պուճուր ես, դրա համար չեմ պիջի: Թաղում մի դոչ պիտի լինի՝ կամ դու, կամ ես...

— Ես քեզ արդեն ասացի՝ դոչ դառնալու միտք չունեմ:

— Էդպես չի լինի, պիտի կռվենք:

— Կռվենք, ինչքան ուզում ես:

— Ազնվորեն պիտի կռվենք:

— Այսի՞նքն,— զարմացա ես:

— Ո՛չ Պետյան, ո՛չ Կոկան չպիտի խառնվեն, քար օգտագործել, հայհոյել չլինի, ընկածին չխփել:

— Համաձայն եմ:

— Թե որ հաղթեցի, էգուց քեզ կծեծեմ էն տղաների մոտ, որոնց աչքի առաջ պատիվս գետնովը տըվիր, հետո ապա ես,— զգուշացրեց Յանգուլը:

— Կռվում ենք մինչև մեկիս հաղթելը,— ասացի ես:

Ոչինչ չպատասխանեց: Սև սատինե խալաթը հանեց ու մի կողմ նետեց: Նրան նայեցի ու սիրտս սկըսեց արագ-արագ բաբախել. լայն կրծքի ձախ կողմում լատիներեն կապույտ տառերով HELLADOS էր դաջված:

Յանգուլը Պետյային հունարեն ինչ-որ բան ասաց: Պետյան տատանվում էր: Յանգուլը կրկնեց հրամանը: Պետյան գրպաններից երկու մեծ քար հանեց ու

ափսոսանքով շպրտեց: Հետո Յանգուլը Կոկային նայեց: Կոկան շրջեց դատարկ գրպանները:

— Սկսենք,— ասաց Յանգուլը:

— Սկսենք,— համաձայնեցի ես ու պայուսակը դրեցի գետնին:

Կռիվը տևեց երկու-երեք րոպե: Ես բռունցքներով էի խփում, Յանգուլը՝ ձեռքի ափով: Իմ հարվածներից խուլ ձայներ էին լսվում, մինչդեռ նա այնպիսի շաչուն ապտակներ էր ծեփում դեմքիս, որ աշխարհը թնդում էր:

Պետյան հունարեն բացականչություններով ոգևորում էր Յանգուլին: Կոկան վրացերեն խորհուրդ էր տալիս.

— Գլխի՛ցը, գլխի՛ցը բռնիր, Ջեմա՛լ:

Հասկանում էի, որ անհրաժեշտ է մոտենալ ու գլուխը թևիս տակ առնել, բայց ձեռքերով ինչքան մեջքը սեղմում էի՝ այնքան նրա քրտնաթոր մարմինը դուրս էր պլստում իմ ձեռքերից: Եվս մի շառաչուն ապտակ և արյուն հորդեց իմ քթանցքներից:

Մինչ կփորձեի արյունը կանգնեցնել, Յանգուլը մի ապտակ էլ հասցրեց: Ես գետնին չոքեցի ճիշտ այնպես, ինչպես Յանգուլը երեկ չոքեց, այն տարբերությամբ միայն, որ երեկ Յանգուլը չկարողացավ ոտքի ելնել, իսկ ես կարող էի, կարող էի, բայց իմ ոտքի ելնելը ոչ մի նշանակություն չուներ՝ մարտը տանուլ էի տվել:

Յանգուլը սպասեց և տեսնելով չեմ շարժվում, խալաթը հագավ: Ես նորից կարդացի նրա կրծքի ասեղնածեծ HELLADOS-ը:

— Մինչև էգուց,— ասաց Յանգուլը:

Ես այդ պահին միայն նկատեցի, որ նրա վերին շրթունքը ուռած է, աջ հոնքը՝ պատռված:

— Մինչև էգուց,— պատասխանեցի ես ու ոտքի ելա:

Յանգուլը և Պետյան հողաթմբերի վրայից անցան ու գնացին երկաթգծի ուղղությամբ: Ես ու Կոկան մնացինք կամրջի տակ:

# ԵՐԵՔ ԿԵՉԻ

Սոսափում են երեք կեչի,
Քամիներից ճկվում, պարում,
Եվ արևի շողը վերջին
Գագաթների վրա պահում:

Ճանապարհին այն ախոռտ
Կանաչեցին երեք կեչին,
Հաղթանակը երբ շատ էր մոտ
Ու մղվում էր մարտը վերջին,

Երբ սուլեցին երեք գնդակ՝
Գնդակները թռան վերջին,
Երեք ջահել զինվոր ընկան,
Ընկան այստեղ՝ ճամփամիջին:

Ու աճեցին նրանց արյամբ,
Սոսափեցին երեք կեչին.
Նրանք հերքում են երեք մահ,
Հպարտ կանգնած ճանփամիջին:

ԳՈՒՐԳԵՆ ԲԱԲԱՅԱՆ

— Բան չկա, նա էլ իրենն ստացավ,— մխիթարում էր Կոկան:

— Վաղը նրա ապուրը ես կեփեմ:

— Երանի քեզ հայելու մեջ նայես:

— Դեմքս շա՞տ է ուռել:

— Բուլկու չափ:

— Ես նրա մերը կլացացնեմ:

Մորաքույրս այս անգամ ոչինչ չասաց, սառը թրջոցներ դրեց երեսիս: Իսկ առավոտյան մածնի բանկան այնպես պարկեց Յանգուլի հոր՝ Խրիստոյի գլխին, ինչպես Յանգուլը ջութակով իմ գլխին, խոստացավ նաև նրա սրիկա ու խուլիգան լակոտին փտեցնել բանտում՝ սովետական պիոներին այսպես ծեծելու համար:

(Շարունակելի)

# ՀԱՆԴԻՊՈՒՄ

ՎԵՆԵՐԱ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Սառնաշունչ զնգոցով
Ձմեռը ժամանեց,
Փաթիլի լուռ երգը
Ողջ աշխարհը բռնեց:

Ճերմակ երազները
Իջնում են անձև
Մանկանց սպիտակ
Բարձերի վրա:

Օդում պարում են
Անթիվ փաթիլներ,
Ջյունն ալիք-ալիք
Ցած է իջնում դեռ...

Ու՞ւս... մանուկները
Թող ժպտան քնած,
Թող առա՞տ-առա՞տ
Ձյունը թափվի ցած:

Հանդիպումը, ոչինչ,
Թող հետաձգվի,
Մինչև որ դրսում
Առավոտ բացվի:



# ՔԱՂԱՔԱԿՐԹՈՒԹՅՈՒՆԻՑ ԴՈՒՐՍ ԳՏՆՎՈՂ ՄԱՐԴԻԿ

Վերջերս Ֆիլիպինների մայրաքաղաք Մանիլայից մոտավորապես 430 մղոն դեպի հարավ-արևմուտք, Պալաուան շրջանի ջունգլիներում հայտնաբերվել է վայրի մարդկանց մի ցեղախումբ, որը բնակվում է հանգած հրաբխի խառնարանում: «Տաո տբատո» (քարե մարդիկ) կոչվող այս տոհմի անդամները, որոնք հիշյալ շրջանի մի շարք լեգենդների նյութ են դարձել, ապրում են խառնարանի տարբեր մակարդակների վրա գտնվող քարանձավներում: Տոհմը բաղկացած է մոտավորապես 30 ընտանիքից: Սնվում են բույսերի արմատներով և գետնախնձորով: Ի տարբերություն 1971 թվականին Մինդանաո կղզու կենտրոնական մասում հայտնաբերված «քարեդարյա» Տասադեյ ցեղի մարդկանց, որոնք ընդամենը 28 հոգի էին, Տաո տբատո խմբի մարդիկ ավելի զարգացած են, նրանք գործիքներ են օգտագործում իրենց նախնադարյան հողագործության մեջ և նույնիսկ դրսևորում են որոշ էսթետիկական հակումներ՝ կանայք զարդարվում են իրենց իսկ հղկած գունավոր ոսկորներից պատրաստված մանյակներով:

Անհավատալի է, սակայն փաստերն ապացուցում են, որ այսօր էլ, երբ մարդը թափանցել է տիեզերք ու ոտք է դրել Լուսնի վրա, մեր իսկ մոլորակի տարբեր շրջաններում ապրում են մարդիկ, որոնք դուրս են գտնվում քաղաքակրթության ոլորտից և անանցանելի անտառների խորքում մեկուսացած, ոչինչ չգիտեն իրենցից դուրս գոյություն ունեցող մարդկության մասին: 1977 թվականի հուլիսին, Բրազիլիայի Ռոռայմա ջունգլիներում մարդաբանները հայտնաբերեցին հնդկացիների բոլորովին անծանոթ մի ցեղի 19 գյուղ: Նույն թվականի օգոստոսին Կոլումբիայի և Վենեսուելայի միջև ընկած անտառներում գիտական մի ուրիշ արշավախումբ հայտնաբերեց մոտավորապես 100 հոգուց բաղկացած մարդկանց մի խումբ, որոնք օգտագործում են տաշած քարե գործիքներ:

Երկրագնդի վրա նման հայտնագործություններ ամենից շատ կատարվել է Ամազոնի ավազանում, Նոր Գվինեայում և Ֆիլիպիններում՝ խաղաղ օվկիանոսի բազմաթիվ «կորած» կղզիներում: Ստորև ներկայացնում ենք գիտության մարդկանց կողմից վերջին տարիներին ուսումնասիրված այդպիսի մեկուսացված «աշխարհներից» մի քանիսը:

## ՀՈՒՆԶՈՒԿՈՒՏՆԵՐ

Ավելի քան քսան հազար հոգի են և ապրում են հյուսիսային Պակիստանի խոր ձորերում: Ենթադրվում է, որ Ալեքսանդր Մակեդոնացու զինվորների հետնորդներն են, որոնք հաստատվել են այստեղ Պարսկաստանից բերած կանանց հետ: Զբաղվում են խղճուկ հողագործությամբ. ժայռերի միջև ընկած հողաշերտերում մշակում են բրինձ, եգիպտացորեն և ցորեն: Կապեր չունեն իրենց շրջապատող քաղաքակիրթ աշխարհի հետ, բայց որոշ հարցերում կարող են օրինակ ծառայել: Հունկուկուտները չունեն բանակ, ոստիկանություն, դատավորներ, բանտ, որովհետև նրանց մեջ չկան գողեր, հանցագործներ: Այստեղ՝ Հունզայում, բոլորն էլ առողջ են, մահանում են միայն ծերությունից: Գիտնականները ուսումնասիրել են մեր ժամանակների այս հրաշքը և եկել են այն եզրակացության, որ հունկուկուտների մշտապես առողջ լինելը պայմանավորված է երեք բանով. խմելու ջուրը՝ հարուստ հանքային աղերով, բանջարեղենը, որը փտամիններով ամենահարուստն է աշխարհում և ոտքով քայլելը. այս մարդկանց համար մի հսկա կամբյուղ մեջքին քսան կիլոմետր քայլելը սովորական զբոսանք է:

## ՍԻՐՈՆՈ ՑԵՂԱԽՈՒՄԲԸ

Բոլիվիայի արևելյան շրջանի անտառներում կիսավայրենի կյանք է վարում Սիրոնո ցեղախումբը: Այս տոհմի բոլոր անդամները զբաղվում են միմիայն որսորդությամբ և ձկնորսությամբ: Ծերեր ու հիվանդներ չկան նրանց մեջ, որովհետև ովքեր կորցնում են աշխատելու ընդունակությունը, համայնքի կողմից թողնվում են ջունգլիների խորքերը և զոհ դառնում գիշատիչ գազաններին: Սիրոնո հնդկացիները չունեն ոչ մի դավանանք, չգիտեն և չեն գործածում որևէ տեխնիկա: Նրանք



որսում են միայն քաղցը հագեցնելու համար, ուտելիքի պաշարներ չեն կուտակում: Ուտում են միայն գիշերը, որպեսզի ուրիշները չտեսնեն. միմյանց ուտելիք փոխ չեն տալիս, թեկուզ մի ընտանիք լիուլի ապահոված լինի որսով, իսկ մի ուրիշ ընտանիք սովից կոտորվի:

## ՏՈՄԱ ՑԵՂԱԽՈՒՄԲԸ

Այսպես է կոչվում Նոր Գվինեայի մի ցեղախումբ, որի մասին մի քանի տարի առաջ ոչինչ հայտնի չէր և հայտնաբերվեց պինվորականների կողմից: Այս տոհմի պատանիները հանձնում են վայրենիների աշխարհում գոյություն ունեցող հասունության ամենախիստ քննությունը: Նրանց մարմինն ու երեսը դաջում են յայն գծերով, այնուհետև թողնում



են թավուտ անտառում, որպեսզի մենակ դիմադրեն վտանգներին ու քաղցին: Այս փորձությունը տևում է տղաների համար՝ երեք, իսկ աղջիկների համար երկու տարի: Իհարկե, շատերն են պոհվում, հատկապես աղջիկները, բայց ում հաջողվում է հանձնել այս խիստ քննությունը, նա կարող է ամեն ինչի դիմանալ: Նրանք հմայիլ (թալիսմաններ) են կրում, գիտեն բույսերից դեղեր և թույներ պատրաստել: Զբաղվում են հողագործությամբ, մշակում են բրինձ, օգտագործելով փայտե գործիքներ:

## ՈՐՈՏԻ ՁԱՎԱԿՆԵՐԸ

Բոլիվիայի ջունգլիներում ապրում են Այորես ցեղախմբի վերջին մնացորդները՝ հնդկացիների միակ հայտնի ցեղը, որին հնարավոր չեղավ ներգրավել Լատինական Ամերիկայի ժողովուրդների կազմակերպված կյանքի մեջ: Ապրում են մեր ժամանակներում, բայց երկրային բոլոր բարիքներից զրկված՝ նախնադարյան, քոչվորական կյանքով: Չունեն ո՛չ գյուղեր, ո՛չ խրճիթներ: Անասուններ չեն պահում, հողագործությամբ չեն զբաղվում: Զարգացած աշխարհի տեխնիկայից ճանաչում են միայն մանգաղը, կարթն ու նետ-աղեղը, որոնցով ապահովում են իրենց սնունդը: Այորես անունը, որին գումարվել է «որոտի ձավակներ» մականունը, ժառանգել են հեռավոր ժամանակներից: Այժմ նրանց կոչում են նաև «խտիրումբես», այսինքն՝ փետրածներ, որովհետև մեծ մասամբ մերկ են ման գալիս: Կես դար առաջ Այորես ցեղը հաշվվում էր մի քանի հազար մարդ, բայց ներքին կռիվները խիստ կրճատեցին այդ թիվը. այժմ հազիվ մի քանի հարյուր հոգի են մնացել: Ծերերին ու հիվանդներին, որոնք չեն կարող ինքնուրույն հոգալ իրենց կարիքները, կենդանի-կենդանի թաղում են: Եթե մայրը մահանում է, նրա անչափահաս, ինքնուրույն կյանք վարելու անընդունակ երեխաներին սպանում և թաղում են մոր հետ:

## ԲԱՐՁՐԱՀԱՍԱԿ ՀՆԴԿԱՑԻՆԵՐԸ

Անծանոթ ցեղի պատկանող, ավելի քան հինգ հարյուր բնակիչ ունեցող մեկուսացած մի գյուղ հայտնաբերվել է ամազոնյան խոր ջունգլիներում: Նրանց անվանել են «բարձրահասակ հնդկացիներ» կամ «հըսկաներ», որովհետև այդ համայնքի բոլոր անդամները, հատկապես տղամարդիկ, 1,90—2 մետր հասակ ունեն: Նրանց տները շինված են քարից ու թրծված հողից, ծածկված են տերևներով: Չեն ճանաչում ո՛չ երկաթ, ո՛չ բրոնզ, նրանց օգտագործած բոլոր գործիքները քարից են կամ փայտից: Կրակ ստանում են կայծքարից: Այս հսկաները ման են գալիս լրիվ մերկ, օգտագործում են պարդեր՝ բույսերի արմատներից պատրաստված վզնոցներ և ապարանջաններ: Ընդհանրապես քաջառողջ են, ի տարբերություն շըրջակայքի ուրիշ ցեղերի, որոնք կոտորվում են համաճարակներից:



# ԽՈՐՀՐԴԱՎՈՐ ԿՈԼՈՐԱԴՈՍ ՑԵՂԸ

Էկվադորի ջունգլիներում ապրում է մի քանի հարյուր մարդուց բաղկացած կոլորադոս ցեղը, որի գլխավոր զբաղմունքն է... պարդարվելը: Իսպանացիք նրանց անվանել են «կոլորադոս», այսինքն՝ գունավոր, կամ կարմիր մարդիկ, այն ներկի պատճառով, որով նրանք նախշում են իրենց մարմինն ու երեսը: «Կոլորադոսն առանց հայելու նման է անզեն որսորդի».— գրել է ֆրանսիացի մի լրագրող, որին հաջողվել է ծանոթանալ նրանց հետ: Նրանք մշտապես հայելու կարիք ունեն, որպեսզի անընդհատ հետևեն դեմքին և մարմնի նախշերին: Գլխի մազերին գլխարկի ձև են տալիս, փայլեցնում յուղերով ու ինչ-որ չորացրած բույսի փոշով: Երեխաները մանկուց սովորում են ներկել իրենց մարմինը, համոզված, որ այդպես գեղեցիկ կլինեն, միաժամանակ իրենցից կվանեն չար ոգիները: Կոլորադոս հնդկացիները բնակվում են բարձր սյուների վրա կառուցած խրճիթներում և սնվում են միայն որսով:

Թե ի՞նչ ծագում ունի այս ցեղախումբը՝ հանելուկ է: Լրիվ մաքրված ներկերից՝ նրանք եվրոպացու են նման: Ինչպե՞ս են հայտնվել ջունգլիներում, ուր գտնվում են մարդկության ամենաստորին աստիճանի վրա: Այդ ցեղի գոյությունը վտանգի տակ է. հիվանդությունները տարեցտարի ավելի փոքրաթիվ են դարձնում այն:

## ՔՈՒՔԱՔՈՒՔԱ

Հյուսիսային Գվինեայի այսպես ասած «սնծանոթ» շրջաններում բնակվող բնիկներից են նաև «Քուբաքուբա» կոչված ցեղախմբերը, որոնք հավիտենական թըշնամության մեջ են իրար հետ:



Այս կիսավայրենիները ընդհանրապես շատ նման են իրար և հավանաբար նույն ծագումն ունեն: Հասակի բարձրությամբ՝ շուրջ 1.50 մ, հիշեցնում են պիգմեյներին: Ագրեսիվ են, հանդուգն ու կովապան: Տղամարդիկ բեղի փոխարեն քթից անցկացված բամբուկի շիվեր են կրում: Ապրում են խրճիթներում և այն վայրերում, որոնք դեռևս դուրս են մնում իշխանությունների հսկողությունից, անարգել կիրառում են մարդակերությունը, ոչ այնքան որպես սնվելու միջոց, այլ իբրև ռազմական ծես: Ցեղախմբերի մշտնջենական ընդհարումներում հաղթողներն ուտում են իրենց ռազմագերիներին: Նման կանիբալիզմի (մարդակերության) հետևանքն է անծանոթ, բոլոր դեպքերում մահացու մի հիվանդության տարածումը, որին տարեկան զո՛հ են գնում մի քանի հարյուր «հաղթող»: Ենթադրվում է, որ հիվանդության պատճառը մարդկային նեխած ուղեղ խժռելն է: Այս ռազմիկների հիմնական զենքը նիզակն է, որի գործածության մեծ վարպետներ են:

## ՊԻԳՄԵՅՆԵՐ

Պիգմեյների հայտնի մի քանի համայնքներից մեկը բնակվում է Հյուսիսային Արգենտինայի Սալտա շրջանում: Նրանք պատահաբար հայտնաբերվեցին և նրանց մասին ոչինչ հնարավոր չեղավ իմանալ, որովհետև օտարներին տեսնելով անմիջապես անհետացան ջունգլիում: Պիգմեյների մի ուրիշ խումբ հայտնաբերվեց Կոնգոյում, ջունգլիի չհետազոտված մի թավուտում: Սրանք որսորդական շներ ունեն, փայտե աղեղներ՝ թունավոր նետերով, և քոչվոր կյանք են վարում: Այնտեղ, ուր հաստատվում են մի քանի շաբաթով, իրենց հիմնական սնընդի՝ մկների և սկյուռների ծխահարման սարքեր են պատրաստում: Պիգմեյները սնվում են նաև



սնկերով, բուսարմատներով և բանանով: Նրանց ամենաբարձրահասակը 1.30 մ է: Հազիվ մեկ մետր բարձրության հասնող պիգմեյների մի ուրիշ խումբ հայտնաբերվեց վերջերս, 1977 թվականի հունվարին, Կոլումբիայի և Վենեսուելայի միջև ընկած անտառներում:

## ...ԵՎ ԱՆԾԱՆՈԹ ՄԻ ԵՐԿԻՐ

Նորագույն հայտնագործություններից մեկը, որը մարդկությանը հայտնի է 1977 թվականի օգոստոսից, բոլորովին անծանոթ մի «երկրի» գոյությունն է՝ ինչ-որ տեղ, ամազոնյան ջունգլիի խորքում: Այդ մասին, Լիմայում անցկացված կոնֆերանսում, նկարների վկայակոչությամբ հաղորդել է ֆրանսիացի բժիշկ Վան Լիրը: Այս «երկրի» բնակչությունը կազմված է շուրջ 80 հազար հնդկացիներից, որոնց Վան Լիրը անվանում է «Նիաուա»: Սրանք բարձրահասակ, թուխ մարդիկ են, քաղաքակիրթ աշխարհի մարդկանց նուրբ դիմագծերով: Ըստ պատմածի Նիաուա երկիրը աշխարհի ամենահարուստներից մեկն է՝ գոյություն ունեն այնտեղ ոսկու և արծաթի հարուստ հանքեր, որոնք շահագործվում են բնիկների կողմից, բայց ոչ առևտրական նպատակներով: Հանքագործությունից բացի նիաուա հնդկացիները զբաղվում են որսորդությամբ և ձկնորսությամբ, որի համար օգտագործում են թունավոր նետեր և քնաբեր բույսեր:

Վան Լիրը վաղուց զբաղվում է իր հայտնաբերած ցեղախմբի կյանքի ուսումնասիրությամբ, բայց կտրականապես հրաժարվում է մանրակրկիտ տեղեկություններ տալ ցեղախմբի և նրա ապրած (իսկական գետնափոր մի քաղաք, մոտ 100 հազ. քառ. մ. տարածությամբ) ճշգրիտ վայրի մասին՝ կողոպուտի ու բնաջնջման վտանգի չենթարկելու համար այդ համայնքը: «Նիաուա» ցեղախումբը,— ասել է նա,— գտնվում է մի տեղ Բրազիլիայի, Կոլումբիայի և Պերուի սահմանների միջև»:

*Թարգմ. Տ. ԴԱՐԲԻՆՅԱՆԻ*

# ԻՆՉՊԵՍ Է ԾՆՎՈՒՄ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ

•

*ՌՈՒԲԵՆ ՄԱՐՈՒԹՅԱՆ*



*Լուսանկարը՝ ՅՈՎԱՆ ԲԵՏԻԿՅԱՆԻ*

*Հանրապետության արվեստի վաստակավոր գործիչ, Երևանի պատանի հանդիսատեսի պետական թատրոնի գլխավոր ռեժիսոր Զավեն Տատինցյանին խնդրում ենք ծանոթացնել մեզ նոր բեմադրվող պիեսի՝ «Ադամի և Եվայի գործի» բովանդակությանը.*

*Գերմանացի ժամանակակից դրամատուրգ Շտարկի «Ադամի և Եվայի գործը» պիեսի հիմքում ընկած է երիտասարդ մարդու ճակատագրի հարցը. Իրար նկատմամբ տածած սիրո ու ընտանիք կազմելու բարդ երևույթի նորագույն մի վերլուծություն է դա: Դրամատուրգը հանդիսատեսի դատին է հանձնում Ադամի և Եվայի ճակատագիրը, նրանց դնելով տարբեր վիճակների ու իրադրությունների մեջ, դրանով իսկ ստուգելով նրանց հավատարմությունը իրար նկատմամբ: Ինչո՞ւ և ո՞ր արժանիքների համար են սիրում մարդուն: Արդյո՞ք իրար նկատմամբ տածած՝ սերը թույլ է տալիս արդարացնելու ծայրահեղ արարքները: Եվ արդյոք ճի՞շտ են նրանք, ովքեր հաշվի չեն նստում շրջապատի հետ՝ իրենց երջանկությունը տեսնելով հասարակությունից անջատ: Ահա պիեսում դրված այս գաղափարը գեղարվեստական հետաքրքիր վիճակներով ու կերպարներով դատա-*

պարտում, քննում և պաշտպանում է Ադամի և Եվայի արարքները՝ նրանց հանելով դժվար կացությունից և դնելով կյանքի ճըշմարիտ ճանապարհի վրա:

... Աղոտ դահլիճում, ռեժիսորական սեղանիկի մոտ նստած է բեմադրող ռեժիսորը: Բեմը լուսավորված է սովորական լույսով, տարբեր բարձրությունների վրա դրված են բարձրաթիկնակ աթոռներ, որոնք ինչ-որ չափով դատարանի դահլիճ են հիշեցնում... Մինչև բեմական փորձերը, դերասանները ռեժիսորի ղեկավարությամբ, փորձասենյակում սեղանի շուրջը պարզել են իրենց մարմնավորած կերպարների բնավորության հիմնական գծերը, մարդկային փոխհարաբերությունները, խորհել ու կշռադատել են արտասանվող յուրաքանչյուր բառի ու նախադասության շուրջը, ապա նոր միայն եկել բեմ, որպեսզի շարժման և գործողության միջոցով պատկերեն իրենց երևակայությունում ծնված հերոսներին:

Եվ այսպես, փորձը սկսված է: Դերասանները գրավում են իրենց տեղերը:

— Ներեցեք խնդրեմ, մինչև տեսարանը սկսելը, ես ուզում եմ պարզել այս ծաղիկների հարցը: Նրանք ինձ հոգնեցնում են... հետո ես չգիտեմ ինչ անել, հենց այնպես գցել մի կողմ, թե՞...

Սա Եվայի դերակատար Սուսաննա Չալոյանն է, որը դիմելով ընկեր Տատինցյանին՝ իր ձեռքի ծաղկեփունջը դնում է սեղանի վրա:

— Ո՛չ, ո՛չ: Սեղանի վրա մի՛ դրեք: Ծաղկեփունջը միշտ պետք է ձեր ձեռքին լինի,—բացատրում է ռեժիսորը:

— Ինչո՞ւ:

— Չէ՞ որ դա Ադամն է գնել, դրանք ձեր սիրած ծաղիկներն են և դուք չեք կարող հենց այնպես մի կողմ նետել: Ադամը կվիրավորվի: Բացի դրանից, քո հերոսուհին շատ է սիրում այդ ծաղիկների բույրը և գույնը դա նրան հիշեցնում է իր մանկությունը: Այնպես որ մենք պետք է ծաղիկների միջոցով բացահայտենք հերոսուհու բնավորության որոշ գծեր, ինչ-որ բան ավելացնենք նրա նկարագրին:

— Համաձայն եմ,— ասում է դերասանուհին,— ծաղիկները ես այսպես կպահեմ, մերթընդմերթ հոտ կքաշեմ և դրանով կընդգծեմ, որ նրանք ինձ համար թանկ են, սիրելի,— նա սկսում է հոտ քաշել, հրճվագին նայել ծաղիկներին:

— Հիմա այդ բոլորը գործողության մեջ դրեք, այնպես որ չընդգծվի, այլ շատ օրգանական, բնական լինի: Խնդրեմ, սկսեցի՛նք:

Փորձը մտնում է իր հունի մեջ:

— Սպասեցե՛ք,— մի քիչ հետո փորձն ընդհատում է դատավորի դերակատար, հանրապետության վաստակավոր արտիստ Ռուբեն Սարգսյանը:— Ես այստեղ չպետք է կանգնեմ հատկապես այն ժամանակ, երբ Ադամը ինձ հարց է տալիս: Ես նրա աչքերը չեմ տեսնում: Լավ կլինի, որ ես երկու քայլ առաջ գամ, այդ ընթացքում հայացքս կհանդիպի Եվայի հայացքին, կզգամ նրա ծանր կացությունը և նոր միայն կպատասխանեմ Ադամի հարցին:

— Ո՛չ, այդ դեպքում իմ արտասանած բառերը ձեզ կխանգարեն,— ասում է դատապաշտպանի դերակատար Արմեն Սանթրոսյանը:

Բեմ է բարձրանում ռեժիսորը, և դերասանների հետ միասին սկսում են վերլուծել ողջ տեսարանը:

Խնդրեմ սկսե՛ք, սկզբից:

Վերսկսում են նույն տեսարանի փորձը և այսպես բազմաթիվ անգամ, ամեն քայլափոխի ճշտելով ու պարզելով շատ մանրամասներ և մանրուքներ, որոնք կաթիլ-կաթիլ կուտակվելով՝ ուրվագծում են ապագա ներկայացման պատկերը: Եվ այսպես փորձերը շարունակվում են օրեր, շաբաթներ, ամիսներ մինչև ծնվում է նոր ներկայացումը:

Իսկ այդ ընթացքում թատրոնի արհեստանոցներում տ ա ր բ ե ր մասնագիտության տեր մարդիկ պատրաստում են նոր ներկայացման դեկորներն ու կոստյումները:

Թատրոնը նման է մի մեծ մեղվափեթակի, ուր յուրաքանչյուրն զբաղված է իր լարված ու քրտնաջան աշխատանքով:






# ԲՆՈՒԹՅԱՆ ՏԱՐՐԵՐԻ ՓՈԽԱԴԱՐՁ ԿԱՊՆ ՈՒ ՊԱՅՄԱՆԱՎՈՐՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

## 7. ՄԱՐԴԸ ԵՎ ԱԶՈՏԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ ԿԵՆՍՈԼՈՐՏՈՒՄ

Բնության մեջ ազոտը քիմիական այլ տարրերի նման անընդհատ շրջանառություն է կատարում, բնական միացություններից անջատվելով ազատ վիճակի և կրկին միացություններ տալով մեզ արդեն հայտնի եղանակներով:

Ընդհանուր առմամբ բնության մեջ այս կենսածին տարրի շրջանառության սխեման կարելի է հետևյալ կերպ պատկերել (տես սխեման):

Բույսերը կլանում են հողում և ջրում գտնվող նիտրատները և դրանցից սինթեզում ամինաթթուներ և պրոտոպլազմայի սպիտակուցներ: Կենդանիները ուտում են այդ բույսերը, օգտագործելով բուսական սպիտակուցները՝ իրենց պրոտոպլազմայի սինթեզի համար: Այսպիսով, կենդանիների և մարդու համար սպիտակուցային նյութերի և ազոտային այլ միացությունների միակ աղբյուր է հանդիսանում բուսական սնունդը: Երբ բույսերը և կենդանիները մահանում են, փտեցնող բակտերիաները այդ սպիտակուցային միացությունները վերածում են ազատ ազոտի և ամիակի: Կենդանիները արտաթորում են ազոտ պարու-

## Տասնվեցամյա նավապետը



Մենք ոչ քիչ խիզախ ծովագնացների գիտենք, որոնք մենմենակ շուրջերկրյա նավագնացություն են կատարել փոքրիկ առագաստանավակներով: Իսկ ահա նավապետի մասին, որը տասնվեց տարեկան էր, երբ ըսկսեց իր ճանապարհորդությունը, շատ քչերը գիտեն...

Երբ Ռոբին Գրեհեմը տասներկու տարեկան էր, նրա հայրը, որը փորձառու առագաստանավորդ էր, նրան սովորեցրեց առագաստանավ վարել, աստղերի կամ արևի օգնությամբ որոշել նավի գտնվելու վայրը, զգալ ծովն ու քամին... Շատ երեկոներ Ռոբին ուսումնասիրում էր ծովերի ու օվկիանոսների քարտեզները: Եվ ահա «Աղավնի» փոքրիկ առագաստանավը դուրս եկավ ամերիկյան Լոս-Անջելոս քաղաքի նավամատույցից: Ռոբինի հետ նավարկության դուրս եկան երկու կատվի ձագեր:

Երեք տարի անց Ռոբինն ավարտեց իր շուրջերկրյա նավարկությունը, հանդիպելով ոչ քիչ արկածների: Դուք կհարցնեք. «Իսկ ինչպե՞ս էր Ռոբինը սովորում»: Նա դասագրքերն իր հետ վերցրել և ամբողջ դասընթացը պարապել էր ինքնուրույն:

նակող տարբեր տիպի թափոններ՝ միզանյութ և միզաթթու, ինչպես նաև ամիակ: Այդ ամիակի մեծ մասը նիտրիֆիկացնող բակտերիաների գործունեության առաջին փուլում վերածվում է նիտրատների, իսկ վերջինս բակտերիաների գործունեության երկրորդ փուլում վերածվում է նիտրատների, որով և ավարտվում է ազոտի շրջանառության ամբողջ ցիկլը:

Արտադրության մեջ, արհեստական եղանակով ազոտական միացություններ են ստանում մեծ ճնշման, բարձր ջերմաստիճանի և կատալիզատորների օգնությամբ:

Վերջին տարիներին բույսերի ազոտային սննդի հիմնական աղբյուրը մթնոլորտի ազատ ազոտի բազայի վրա ազոտական պարարտանյութերի քիմիական սինթեզն է հանդիսանում: Այսպիսով, երկրագործությունը և քիմիական պարարտանյութերի արդյունաբերությունը զգալիորեն փոխել են ազոտի կենսագեոքիմիական շրջանառության ուղղությունը, ոչ թե դեպի մթնոլորտ, այլ դեպի ցամաք, հող և կենսոլորտ:

ԱՄՆ-ի գիտնականների կատարած հաշվարկը ցույց է տվել, որ անհրաժեշտ քանակությամբ հացահատիկի արտադրությունը ապահովելու համար յուրաքանչյուր բնակչի հաշվով տարեկան ծախսվում է 85 կգ ազոտ՝ հանքային պարարտանյութերի ձևով: Եթե այդ թիվը որպես նորմա ընդունենք երկրագնդի 4 միլիարդ բնակչության համար, ապա, հենց միայն այսօր անհրաժեշտ է արտադրել 340 միլիոն տոննա ազոտական պարարտանյութ, ներկայումս ամբողջ աշխարհում արտադրվող 30 միլիոն տոննայի դիմաց:

Սակայն ժամանակակից քիմիական արդյունաբերությունը ի վիճակի չէ այդքան ազոտական պարարտանյութ արտադրելու: Հետևաբար, անհրաժեշտ է առաջին հերթին խնայողաբար օգտագործել ազոտը, կանխել կորուստները (բնության մեջ դրանք տեղի են ունենում լվացումների և ազոտական միացությունների քայքայման ճանապարհով):

Սովետական գիտնական Կուդեյարովը մոտավոր հաշվարկ է կատարել մարդկության կողմից կապակցված ազոտի պահանջարկի վերաբերյալ: Նա գտնում է, որ եթե մեր թվարկությունից 5000 տարի առաջ, երբ հավանաբար, երկրագնդի վրա ապրում էր ավելի քան 30 միլիոն մարդ, սպիտակուցային ազոտի պահանջարկը կազմել է ընդամենը 150 հազար տոննա: Մեր թվարկության սկզբին մարդկության թիվը հասել է 280 միլիոնի, իսկ սպիտակուցային ազոտի պահանջարկը՝ 1.15 միլիոն տոննայի: 1900-ական թվականներին, երբ երկրագնդի բնակչության թիվը հասել է 1 միլիարդ 656 միլիոնի, սպիտակուցային ազոտի պահանջարկը եղել է 8.28 միլիոն տոննա: 1970 թվականին այդ թվերը համապատասխանաբար կազմել են 3.635 միլիոն և 18.17 միլիոն տոննա: Կուդեյարովի կանխագուշակման համաձայն, 2000 թվականին երկրագնդի 6.493 միլիոն բնակիչները կսպառեն 32.5 միլիոն տոննա սպիտակուցային ազոտ:

Սա նշանակում է, որ մարդու գործունեության հետևանքով խախտվում է ազոտի կենսաերկրաքիմիական շրջանառությունը և կենսոլորտում ամենուրեք ազոտական միացությունների ավելորդ կուտակում է դիտվում: Ազոտի խտությունը ներկայումս հատկապես մեծ է բնական ջրերում: Քիչ չէ այն շրջանների թիվը, որտեղ ազոտական միացությունների խտությունը արդեն հասել է թունավորի սահմանին:

Ներկայումս կենսոլորտում ազոտի ամենամյա ավելցուկը կազմում է 9 միլիոն տոննա: Որոշ գիտնականների հաշվարկների համաձայն այդ թիվը կրկնակի անգամ մեծ է և կազմում է 18.6 միլիոն տոննա: Բնական ճանապարհով ուժեղացնել ազոտական միացությունների քայքայումը հեշտ չէ, բացի այդ, դա կլիներ բնության և մարդու կողմից կուտակված հարստության կողոպտում: Սակայն մտածված, խելացի կերպով ազոտի տարերային ստացումը կանխելը (հեկտարին 100 կգ ազոտը դա արդեն խիստ բարձր նորմա է) միանգամայն հասունացած հարց է:

Այս բոլորից բխում է, որ անհրաժեշտ է ճշտորեն որոշել ապագայի երկրագործության կողմից պահանջվող ազոտի ընդհանուր քանակը, ազոտի միացությունների ձևափոխման ու տեղափոխման՝ օդային, ջրային և ցամաքային ուղիները:

Ազոտ պարունակող թափոնները հավաքելը և որպես պարարտանյութ օգտագործելը կարևորագույն խնդիր է: Առանց դրան բնության մեջ ազոտական միացությունների խտությունը անընդհատ կաճի, լուրջ սպառնալիք ստեղծելով մարդկության և կենդանական աշխարհի համար:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*


Լույս է տեսնում 1923 թվականից



2. 1979 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ




Շապիկի առաջին էջը՝ ԲԱԳՐԱՏ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—88, 56—14—06:

ՎՖ 02656: Պատվեր 2395: Տպաքանակ 51000: Տպ. 3 մամ.:

Ստորագրված է տպագրության 25 I 1979 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

Գինը 15 կ. · ԻՆԴԵՔՍ 77806

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ

# ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

Քնել է ծաղիկը,
Չի նստում շաղիկը,
Հավքերի տաղիկը
Վաղուց չկա,
Թռել են լորերը,
Լռել են ձորերը,
Ամպոտ են օրերը,
Պաղ ձյուն կգա:

Անտառի ներկերը
Մշուշը ծածկել է,
Խաղաղ են հերկերը
Դաշտի մեջ գորշ,
Գունատ է չոր լանջը,
Թավուտի չաղ արջը
Կերել է հաղարջը,
Գնում է որջ:

Ու քամին սուրում է,
Գայլուկը սարում է,
Մասրենին պարում է
Մոտիկ հովտում,
Գյուղում է հնձվորը,
Դատարկ է մեր ձորը,
Տես, վերջին խնձորն է
Ագռավն ուտում:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# ՄԻ ՃԱՄԲԱՐ

Գանձն են թափել ծառերն իրենց,
Չեն զրնգում երգ ու պար,
Խորունկ նիրհ է մտել ձյան մեջ
Պիոներական մի ճամբար:
Առվի ոլոր ճամփան սառել,
Ջուրն է խաղում սառցի տակ,
Ձյունն անտառում սավան դառել,
Լույսն է փռել իր ճերմակ:
Մի պահակ կա շան հետ սիրուն,
Դատարկ տնակ, մի սեղան,
Եվ շնիկը միտք է անում,
Թե մանուկներն ինչ եղան:
Նա ամառն է հիշում խաղաղ,
Անցան երեք տաք ամիս,
Մանուկները իրեն հաճախ
Տալիս էին հաց ու միս:
Ծանր են սարերը հեռանիստ,
Լանջերին բուքն է պարում,
Լռությունն է նստել հանգիստ
Պիոներական ճամբարում: